*K'ristoneut'yune" P'ok'r Hayk'um. Azgayin-kronakan ev sots'ial-k'aghak'akan iravichake" nahangum III dari erkrord kesin (e"st IV dari srbots' vkayabanut'yants') [Christianity in Armenia Minor. The National-Religious and Social-Political Situation in the Province in the Second Half of the 3rd Century (based on the Martyrologies of Saints of the 4th century)]*, by Hratch Bartikyan, from *Patma-banasirakan handes [Historico-Philological Journal]* (Erevan, Armenia) 2(2001), pp. 3-43, in 41 pdf pages.

ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՊԵՏԱԿԱՆ ԿՐՈՆ ՀՌՉԱԿԵԼՈՒ 1700-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՓՈՔՐ ՀԱՅՔՈՒՄ. ԱԶԳԱՅԻՆ-ԿՐՈՆԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՐԱՎԻՃԱԿԸ ՆԱՀԱՆԳՈՒՄ III ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ

(Ըստ IV դարի սրբոց վկայաբանությանց)

ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆ

*Սույն աշխատության ստեղծման համար ես պարտական եմ Սանկտ-Պետերբուրգի Պետական Էրմիտաժի բյուզանդական արճճե կնիքների հարուստ ժողովածուի երկարամյա հետազոտող բյուզանդագետ Վ. Ս. Շանդրովսկայային: Նա հիշյալ թանգարանի սրբոց Եվստրատիոսյանց պատկերով XI դարի երկրորդ կեսի բյուզանդական արճճե կնիքներին նվիրված հոդվածով (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդեսի» ներկա համարը), մեզ հնարավորություն ընձեռեց անդրադառնալու սույն աշխատության վերնագրում արտահայտված հարցերին: Վ. Ս. Շանդրովսկայան բյուզանդական հայազգի գործիչների արճճե կնիքներին նվիրել է բազում հոդվածներ[1]: Մեր ուսումնասիրությունը, ինչպես ընթերցողը կհամոզվի, դուրս է եկել հիշյալ սրբերի կյանքի ու գործունեության մասին շարադրանքի շրջանակից, լուծում է բազում հարցեր, բարձրացնում նորերը:*

*Առաջին հարցը, բնական է, վերաբերում է քրիստոնեության տարածմանը Փոքր Հայքում III դարի երկրորդ կեսին: Սկսած V դարից, հայ գրի ստեղծման ժամանակից մինչև օրս, քրիստոնեության մասին Հայաստանում շատ է գրվել, սակայն բոլոր աղբյուրները և ուսումնասիրությունները անդրադառնում են Մեծ Հայքին, կարծես Փոքր Հայք գոյություն չի ունեցել, հայեր այստեղ չեն եղել: Ագաթանգեղոսը՝ Հայաստանում հաղթանակած նոր կրոնի հիմնական աղբյուրը, նկատի ունի Մեծ Հայքը, Արշակունյաց թագավորությունը: Միայն առաջին անգամ, երբ ուղում է*

1 Неизвестные печати Аарона: магистра у дуки Иверии и Великой Армении, проедра и дуки. Сообщения Государственного Эрмитажа вып. XXXVII 1973, с. 60–64; К истории армяно-византийских отношений XII в. По данным сфрагистики. – *«Լրաբեր հաս. գիտ.», 1974, №7*, Эрмитажные печати Филарета Врахамия (Варажнуни). – *«Լրաբեր հաս. գիտ.», 1975, №3, էջ 36–49;* Неизвестный правитель Византийской фемы Иверия. – *«Լրաբեր հաս. գիտ.», 1976, №9, էջ 79–86*, Печати армянских деятелей XI–XII вв. и правителей Васпуракана. Четвертый международный симпозиум по армянскому искусству. Тезисы докладов. Ереван, 1985, с. 305–306; *Վ. Ս. Շանդրովսկայա, Հ. Մ. Բարթիկյան. Հայերեն արձանագրությամբ բյուզանդական արճճե կնիք Պետական Էրմիտաժի ժողովածուում. – «Պատմա-բանասիրական հանդես» (այսուհետև՝ ՊԲՀ), 1991, №1, էջ 122-128:* К истории фемы Васпуракан. – Византийский временник, т. 55(80), 1994, с. 152–161.

ցույց տալ, որ քրիստոնեությունն ամբողջությամբ ընդգրկել էր Հայաստանը, հիշատակում է, իր պատկերացմամբ, Հայաստանի ամենաարևմտյան քաղաքը՝ Սատաղը[2]: Եվ երկրորդ անգամ, երբ գրում է Կեսարիայում ձեռնադրված Գրիգոր Լուսավորչի վերադարձի ժամանակ նրա Սեբաստիայում կանգ առնելու և այնտեղից իր հետ հայ հոգևորականներ Մեծ Հայք բերելու մասին[3]: Տառացիորեն ընթացիկ տարում, քրիստոնեության 1700-ամյակին նվիրված Հայաստանի Հանրապետության Գիտությունների ազգային ակադեմիայի կազմակերպած «Հայոց սրբերը և սրբավայրերը» խորագրով հոբելյանական սեսիայի նյութերում (որոնք լույս տեսան առանձին գրքով, նույն վերնագրի տակ), Փոքր Հայք գոյություն չունի՝ ոչ սրբեր, ոչ սրբավայրեր[4]: Պողոս Անանյանը, որ Հայաստանում քրիստոնեության տարածմանը՝ նախքան Գրիգոր Լուսավորչի քարոզչությունը, հատուկ ուսումնասիրություն է նվիրել, Աշտիշատից, Բարձր Հայքից արևմուտք չի գնում[5]:

## 1. Սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանության հայերեն հրատարակությունների մասին: Դրանց առնչակցությունը Սիմեոն Մետափրաստեսի հունարեն բնագրի հետ

Դիոկլետիանոս կայսեր օրոք (284-305 թթ.) նահատակված սրբոց Եվստրատիոսյանց՝ Եվստրատիոսի, Ավքսենտիոսի, Եվգենիոսի, Օրեստեսի և Մարդարիոսի վարքն ու վկայաբանությունը մեզ անհայտ հեղինակի կողմից գրվել է հունարեն IV դարի առաջին կեսին: Հունարենից թարգմանվել է հայերեն V դարում, ամենայն հավանականությամբ, սրբոց թարգմանչաց կողմից, և իրենից ներկայացնում է նախասկզբնական տարբերակը: Հայերենի համար բնադիր հանդիսացած հունարենը չի պահպանվել: Մեզ է հասել X դարի բյուզանդական նշանավոր վարքագիր Սիմեոն Մետափրաստեսի խմբագրությունը: Ուստի հայերեն թարգմանությունը փաստորեն իրենից ներկայացնում է նախագաղափար օրինակը և նրա հիման վրա հնարավոր է պատկերացնել Մետափրաստեսի կատարած խմբագրական աշխատանքը: Վերջինիս աշխատանքի մասին շատ դիպուկ գրել է Ն. Ակինյանը. «Սիմեոն Մետափրաստես Ժ դարուն (Ը) կատարած է հույն վկայաբանության համար այն խանգարիչ դերը, զոր ասլա փոքր տարբերությամբ Գրիգոր Ծերենց խաղացած է հայ Հայսմավուրաց համար: Հնագույն վկայաբանությունները համառոտած կամ ընդարձակած է ըստ կամի հավելվածներով և նմանյոք»[6]: Համեմատելով սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանության V դարի մեր թարգմանությունը Մետափրաստեսի խմբագրութ-

---

2 Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան և Ստ. Կանայեանց. Տփղիս, 1909, էջ 439-440:

3 Նույն տեղում:

4 Արդեն քրիստոնեացած Փոքր Հայքում տարածված աղանդների մասին գրել է Լ. Ս. Խաչիկյանը (Փոքր Հայքի սոցիալական շարժումների պատմությունից (IV դ.). Երևան, 1951), բայց դա ո՛չ ժամանակով և ո՛չ բովանդակությամբ չի առնչվում մեր հետազոտության նյութին:

5 Պ. Ա ն ա ն յ ա ն. Քրիստոնեության հետքեր Հայաստանի մեջ Ս. Գրիգոր Լուսավորչի քարոզութենեն առաջ (Պատմական ուսումնասիրություն). Վենետիկ, 1979:

6 Ն. Ա կ ի ն յ ա ն. Նյութեր հայ վկայաբանության ուսումնասիրության համար. Վիեննա, 1914, էջ Գ:

*յան հետ, նկատում ենք, որ նրա «խանգարիչ» գործունեությունը այստեղ այնքան էլ սարսափելի չի եղել:*

*Սիմեոն Մետափրաստեսի կազմած բնագիրը XVI դարում լատիներեն է թարգմանել Լավրենտիոս Սուրիոսը (1522-1578 թթ.):*

*V դարի հայերեն թարգմանությունը Վենետիկում հրատարակվել է երկու անգամ, նախ Մկրտիչ Ավգերյանի կողմից՝ 1813 թ., ապա 1874 թ., հայտնի չէ ում աշխատասիրությամբ: Երեք էջից բաղկացած առաջաբանում ոչ մի անուն չի հիշատակված:*

*Մ. Ավգերյանը խնդրո առարկա վկայաբանությանը տվել է հետևյալ խորագիրը. «Վկայաբանութիւն սուրբ և փառաւորեալ ճգնազգեաց վկայիցն՝ Եւստրատիոսի, Եւղինէոսի, Աւքսենտիոսի կամ Օգսենտիոսի, Ովրեստի կամ Ովրեստէսի, և Մարդարիոսի, որ և Մարդայր, կամ Մարտայր (այսինքն՝ այր արի»): Վկայաբանության վերնագիրը ձեռագրերում այդպիսին չէ: Անձնանունների կրկնակի հիշատակությունը և Մարգարիոս «անվան» ստուգաբանությունը պատկանում են Մկրտիչ Ավգերյանին:*

*Վենետիկի Մխիթարյանների 1874 թ. հրատարակությունը ավելի ստույգ է, հետևում է ձեռագրերի ընթերցվածներին, զուրկ է բացատրություններից և ստուգաբանություններից և ուսումնասիրության համար, անտարակույս, նախընտրելի է:*

*Կանգ առնենք V դարի հայերեն թարգմանության վրա: Այն սուրբ թարգմանչաց գրչին վերաբերելու մասին վկայում են ոսկեղենիկ լեզուն և թարգմանության սկզբունքները, որոնք հար և նման են Նոր Կտակարանի հայերեն թարգմանության լեզվին և սկզբունքներին: Դեռևս Գարեգին Զարբհանալյանը այդ առթիվ գրել էր. «Հարանց վարուց՝ կամ անգ զանազան մասանց՝ յորոց ձևացած է, կրկին թարգմանութիւնք եղած են և կան մեր մատենագրութեան մէջ, յորոց մին հնագոյն և ազնուագոյն ոճովն և բովանդակութեամբ*[8]*, և միւսն աւելի նոր գարուց մէջ եղած և մեր գպրութեան արծաթի դարուն վերաբերելով, և անկէ ալ ասդին. որովհետև Լամբրոնացւոյն ժամանակ և իր ջանքերով եղած կաւանգուի վերջին կարգաւորութիւն և դասաւորութիւն գրոցս: Նախնական թարգմանութեան քանի մը կարևորագոյն հատուածք՝ ինչուան հինգերորդ դարու հնութեան կելլեն լեզուն և ոճն ալ զայն կը հռչակեն»*[9]*:*

*Հենց վերջերս կատարելով չորս Ավետարանների և Գործք Առաքելոցի հայերեն թարգմանության համեմատությունը հունարեն բնագրի հետ, համոզված կարող եմ կրկնել ու պնդել, որ, իրոք, մեր վկայաբանության թարգմանությունը հունարենից կատարվել է հենց V դարում:*

*Ինչ ցույց տվեց վկայաբանության 1813 և 1874 թթ. հրատարակությունների համեմատությունը: Մկրտիչ Ավգերյանը հավատացյալ ընթերցողներին է հասցեագրում իր հրատարակությունը: Առանց հատուկ նշելու, վկայաբանության բնագրի մեջ նա կատարում է բազում ընդմիջար-*

---

7 *Լիակատար վարք և վկայաբանութիւնք սրբոց, որք կան ի հին Տօնացոյցի եկեղեցւոյ Հայաստանեայց: Յօրինեալ վաւերական բանիւք ճառընտրաց մերոց և այլոց ազգաց, հանդերձ ծանօթութեամբք ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեանց. հ. Թ. Վենետիկ, 1813:*

8 *Սույն հոդվածում, եթե հատուկ չի վերագրված, բոլոր ընդգծումները մերն են:*

9 *Գ. Զ ա ր պ հ ա ն ա լ ե ա ն. Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց (դար Դ-ԺԳ). Վենետիկ, 1889, էջ 539:*

*կությունններ, տալիս հունարեն տերմինների բացատրություններ, որպես կանոն հենվելով ոչ թե Մետափրաստեսի հունարեն բնագրի, այլ Սուրիոսի լատիներեն թարգմանության վրա*[10]*, այն էլ՝ իտալերեն արտասանությամբ:*

*Սիմեոն Մետափրաստեսն ունի. 1) Դիոկլետիանոս կայսրը ոմն դուքս Լյուսիասի նշանակեց* «πάντων τῶν λιμιτανέων ἐπιτροπεύειν», *այսինքն՝ ղեկավար՝ հրամանատար (բոլոր լիմիտանեոսների): Լիմիտանեոս՝ լատիներեն* limitaneus *նշանակում է սահմանապահ, սահմանապահ զորք: 1874 թ. հրատարակության մեջ լատիներեն տերմինը «բացատրված» է, չի թարգմանված, քանզի, հավանաբար, V դարի թարգմանիչները նրան հարմար բառ չեն գտել, բայց քանի որ նրանք սկզբունք ունեին իրենց թարգմանության մեջ ինչքան հնարավոր է օտար բառ չօգտագործել, պարզապես նշանակել են* «ի դքսութիւն գլխաւորութիւնն»*:*

*Մկրտիչ Ավգերյանի հրատարակած բնագրում ասված է. «ի դքսութիւն համօրէն սահմանացն այնոցիկ իբրև մարզպան կուսակալ և զօրավար՝ որ ի հռովմայեցւոց կոչէր տուքս լիմիտանէուս, որպէս թէ սահմանապետ, և կոչէին ձեռն լիմիտացի, այսինքն սահմանագունգ»: Նա ոչ միայն տերմինն է բերում լատիներեն արտասանությամբ (լիմիտանէուս), այլև մանրամասն բացատրություն է տալիս:*

*2) Մետափրաստեսի բնագրում ասված է, որ Եվստրատիոսը* “ἐκεῖνον τὸν ἐνιαυτὸν *κομενταρήσιον* ὑπάρχειν”, *այսինքն տվյալ տարում նա վարում էր կոմենտարեսիոսի զինվորական պաշտոնը: Այնուհետև* “Εὐστράτιος *κομενταρήσιος* εἶπεν”- *«Եվստրատիոս կոմենտարեսիոսն ասաց»:*

*1874 թ. հրատարակված բնագիրը հետևում է նույն սկզբունքին՝ օտար բառը «թարգմանել», չբերել օտարահունչը: Եվստրատիոսը* «յամին յայնմիկ իշխան էր ի վերայ ամենայն զօրացն»*:*

*Ահա և Մ. Ավգերյանի հրատարակությունում. «Եւստրատիոս էր յամին յայնմիկ ոստիկան կալանաւորաց, և գլուխ զօրականին իբրև համարակալ և գպիր յիշատակաց՝ կոչեցեալ ի հռովմայեցւոց* գօմէնտարիէնգիս*» (լատիներեն արտասանությունը):*

*3) Սրբոց թարգմանչաց սկզբունքը հանդես է գալիս և այլ դեպքերում: Այսպես. հունարեն բնագրի* “Εὐστράτιος τις *σκρινιάριος* τῆς δουκικῆς ὑπάρχων τάξεως” *(«Ոմն Եվստրատիոս, որ դքսական գնդի* սկրինիարիոսն[11] *էր»), հայերեն թարգմանվել է. «Եւստրատիոս ոմն էր իշխան յայնմիկ ի* դասուց Լիւսիայ բդեշխին»[12]*:*

---

10 Vitae Sanctorn orient. et occident (*վեց հատորով՝ 1569–1575*).

11 *Այս և մնացյալ հունա-հռոմեական տերմինների բացատրությունը հատուկ տրվում է հոդվածի վերջում:*

12 *«Բդեշխ» թարգմանությունը, հարկավ, սխալ է: Լյուսիասը ամենևին էլ բդեշխ չէր: Նման սխալ հանդիպում է և Գործք Առաքելոցի հայերեն թարգմանության մեջ (13.7, 13.8, 13.12, 18.12), ուր* ἀνθύπατος-*ը (լատ.* proconsul*) թարգմանված է «փոխանակի բդեշխին»: (Այդպես և Եվսեբիոս Կեսարացու Եկեղեցական պատմության հայերեն թարգմանության մեջ: Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն եկեղեցւոյ յեղեալ յասորոյն ի հայ ի հինգերորդ դարուն: Պարզաբանեալ նոր թարգմանութեամբ յոյն բնագրէն ի ձեռն Հ. Աբրահամ վ. Ճառեան, ի Վենետիկ, 1874, էջ 665): Հայերեն թարգմանվել է իր ժամանակին հայտնի «բդեշխ»: Արտաշիսյան և Արշակունյաց Հայաստանում բդեշխները չորս «կողմնապահներն» էին, թագավորության աշխարհագրական չորս մասերի ռազմաքաղաքական ղեկավարները: Գահնամակում դասվել են թագավորից անմիջապես հետո՝ իբրև դահերեց*

4) Մ. Ավգերյանը հատուկ անունները ևս բերում է՝ օգտվելով վկայաբանության լատիներեն թարգմանությունից: Եվստրատիոսի հայերեն անունը ըստ հունարեն բնագրի Κυρισίκης (Կիրիսիկէս) էր, Ավգերյանը կարդում է Ձիրիսիչէս, ասել է՝ իտալերեն արտասանությամբ:

5) Հայ թարգմանիչը, չցանկանալով հունարեն Πραιτώριον (լատ. praetorium) բառն օգտագործել, տալիս է նրա «թարգմանությունը» «ապարանք իշխանին»: Նկատենք, որ Πραιτώριον-ը «ապարանք» են թարգմանել սուրբ թարգմանիչները (տե՛ս Ավետարան ըստ Մատթեոսի 27.27, ըստ Հովհաննու՝ 18.28, 18.33, 19.9, Գործք Առաքելոց՝ 23.35):

6) Հռոմի կողմից Փոքր Հայքի (և Կապադովկիայի) կառավարիչ նշանակված Ագրիկոլայոսի «հեգեմոն» (ἡγεμών) կոչումը հայերեն վկայաբանության մեջ թարգմանված է «դատաւոր»: Հեգեմոնը գլխավոր դատավորի իրավունքներն ուներ, բայց հունարեն տերմինը՝ «հեղեմոն» դատավոր չի նշանակում: Հրեաստանի կառավարիչ Պիղատոսի «հեգեմոն» կոչումը Նոր Կտակարանում էլ «դատաւոր» է թարգմանված («ետուն (Քրիստոսին) ի ձեռս Պոնտացւոյ Պիղատոսի դատաւորի») (Ավետարան ըստ Մատթեոսի, 27.2): Հունարեն բնագրում՝ Παρέδωκαν Πιλάτῳ τῷ ἡγεμόνι: Ղուկասի Ավետարանում (3.1)՝ "ἡγεμονεύοντος Ποντίου Πιλάτου τῆς Ἰουδαίας": Թարգմանված է. «ի դատաւորութեան Հրէաստանի Պիղատոսի Պոնտացւոյ»:

Այսպիսով, σκρινιάριος-ի «բդեշխ» թարգմանությունը, Πραιτώριον-ի՝ «ապարանք», ἡγεμών-ի՝ «դատաւոր», և դրանց համապատասխանությունն ու համընկնումը սրբոց թարգմանչաց թարգմանությունների հետ, մեզ թույլ են տալիս ենթադրելու նրանց մասնակցությունը վկայաբանության թարգմանությանը:

7) Վերջապես կանգ առնենք և Մ.Ավգերյանի մի ընդմիջարկության վրա ևս: Դուքս Լյուսիասի Եվստրատիոսին ուղղված այն հարցին, թե ո՞վ է նա և որտեղի՞ց է սերում, Եվստրատիոսը պատասխանում է. " Ἐκ τῆς Ἀραυρακηνῶν ὥρμημαι πολίχνης, Εὐστράτιος τοὔνομα, *Κυρισίκης* τὴν ἐπωνυμίαν, τῇ πατρῴᾳ διαλέκτῳ" («Սերում եմ ես Արավրակա քաղաքից, անունս Եվստրատիոս է, ըստ հայրենի բարբառի՝ Կիրիսիկես մականվանյալ»): 1874 թ. հրատարակությունում կարդում ենք. «յԱրաւրակացւոց քաղաքէն եմ ես՝ ազգաւ և տոհմիւ, և անուն իմ Եւստռատիոս կոչի»: Մ. Ավգերյանի հրատարակած բնագրում. «յԱրաւրակացւոց քաղաքէն եմ ես՝ ազգաւ և տոհմիւ. և անուն իմ Եւստռատիոս կոչի. և ըստ հայրենի բարբառոյ հայկազանցս Տէր Յուսիկ ձայնեալ, զոր Յոյնք կիռ Իւսիկ (կամ Գիռ իսիկէս) կարդան...»: Ընդգծվածը Մ. Ավգերյանի ավելացրածն է:

Որտեղի՞ց է Մ. Ավգերյանը ստացել «հայկազանց բարբառը»: Դժվար չէ այն որոշել: Սրբերից Մարգարիտոսը, իր տան տանիքից տեսնելով չղթայակապ տարվող Եվստրատիոսին, ասում է իր կնոջը "τῇ Ἀρμενίων διαλέκτῳ. Ὁρᾷς, ὦ γύναι, τὸν κύριον τῆς περιοικίδος ἡμῶν" (սյունակ

---

իշխաններ: Ըստ Ագաթանգեղոսի՝ Տրդատ III-ին Հռոմ ուղեկցողների մեջ էին «ի զինուորական կողմանէն դչորեսին գահերեցսն իւրոյ տաճարին, որ բդեաշխքն կոչին» (Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, էջ 459):

480)[13] «ասում է կնոջը հայերեն լեզվով: Տեսնու՞մ ես, ով կին, մեր չրջանի տիրոջ»): Նրան մի փոքր անց անվանում է Κυρισικης, կոչականով՝ Δεσποσυνε Κυρισίκη (սյունակ 481), Κύριε μου Κυρισίκη (սյունակ 484) - «Տեր իմ Կիրիսիկես»: Առանձին ձառընտիրներում «Կիրիսիկես» անունը բացակայում է, տրված է դրա հայերեն թարգմանությունը: Օրինակ 1404 թ. արտագրված ձառընտրում (Մաշտոցի անվան Մատենադարանի թիվ 1520 ձեռագրի թերթ 193), ուր տրվում է սրբոց Եվստրատիոսյանց համառոտ վկայաբանությունը, Եվստրատիոսի բնիկ անունը մշտապես «տէր Յուսիկ» է բերված: Նույնը հանդիպում է նաև Հայսմավուրքներում: «Քաղոցի բ և դեկտեմբերի ժգ»-ի տակ շատ ավելի համառոտ բերված է «Վկայաբանութիւն սրբոց Եւստրատիոսեանց մարտիրոսացն», ուր մեզ հետաքրքրող նախադասությունն այսպիսին է. «Էր սուրբն Եւստրատիոս ի քաղաքէն Արօկայ՝ որ արդ կոչի Արղընցիք՝ պատուով ի դքսական կարգէն ի հարկևորացն: Եւ էր հայրենական անուն նորա Տէր Յուսիկ...»: Անդրադառնալով Մարդարիոսի՝ իր կնոջ հետ ունեցած խոսակցությանը, մի անգամ ևս հանդիպում է «Տէրն մեր Յուսիկ» դարձվածքը (տե՛ս «Գիրք որ կոչի Այսմաւուրք»... 1730, էջ 242, 243):

Օրինակները կարելի է բազմապատկել, բայց ասվածն էլ բավական է ցույց տալու համար, որ գիտական աշխատանքի համար Մ. Ավգերյանի հրատարակած բնագիրը չի կարելի օգտագործել: Այն բազում թյուրիմացությունների տեղիք կարող է տալ:

Արդ, ի՞նչ հարաբերության մեջ է գտնվում վկայաբանության հայերեն թարգմանությունը Սիմեոն Մետափրաստեսի հունարեն բնագրի հետ:

Եթե մենք համոզված ենք, որ մեր ձեռքում եղած V դարի հայերեն թարգմանությունը կատարվել է IV դարում իրականացված հունարենից և արտահայտում է սկզբնական բնագիրը, ապա X դարի հունարեն խմբագրությունը, թեև հետևում է նախնական հունարեն բնագրին, ունի առանձին տարբերություններ, որոնք Սիմեոն Մետափրաստեսի խմբագրության արտահայտությունն են[14]:

Այսպես, նախ և առաջ քրիստոնյաների դեմ հալածանքներ ձեռնարկած կայսրի կամ կայսրերի մասին: Հայերեն թարգմանությունը ցույց է տալիս, որ «ի սոյն իսկ ժամանակի համբաւ իմն հասանէր ի լսելիս անօրէն իշխանին իբրու թէ ամենայն աշխարհն Հայաստանեաց և Կապպադովկիա ընդդիմամարտ եղեն թագաւորական հրամանին, և միաբանութեամբ յապստամբութիւն իմն թևակոխեն» (էջ 436)[15]: Հարկավ, «անօրէն իշխանին» բառերի տակ ենթադրվում է Դիոկղետիանոս կայսրը: Սիմեոն Մետափրաստեսի տեքստում այստեղ «իշխան» չէ, եզակիում չէ, հանվանե չեն հիշված, բայց ենթադրվում են Դիոկղետիանոսն ու Մաքսիմիանոսը (“τοις τυραννοις

13 «Սյունակի» տակ ենթադրվում է “J.P. Migne-ի Patrologia graeca-ի 116-րդ հատորում լույս տեսած Եվստրատիոսյանց վկայաբանության բնագրի սյունակը: Եթե նշվում է «էջը», ապա խոսքը վերաբերում է 1874 թ. հայերեն թարգմանության հրատարակության էջին:

14 Վկայաբանության հունարեն վերնագիրը ըստ Մետափրաստեսի այսպիսին է. Ἄθλησις των ἁγίων μαρτυρων Εὐστρατιου, Αὐξεντιου, Εὐγενιου, Μαρδαρίου καὶ Ὀρεστου. J.P. M i g n e. Patrologia cursus completus, series graeca. T. 116, col. 467-506.

15 Այսուհետև փակագծերում հայերեն թարգմանության էջերը ըստ 1874 թ. հրատարակության:

τουτοιs - *«այս բռնակալներին»): Երկու բնագրերը չեն համընկնում և տեղանունների հարցում: Եթե հայերեն թարգմանությունը ցույց է տալիս, որ նոր կրոնը բռնել էր* «ամենայն աշխարհն Հայաստանեաց», *ապա Սիմեոն Մետափրաստեսը գրում է* ¨*απασα η Μεγάλη 'Αρμενια*¨ - «ամենայն Մեծ *Հայքը» (սյունակ 468)*[16]*: Այս մասին հատուկ կխոսվի, այստեղ նշենք միայն, որ Մետափրաստեսը «ուղղում է» բնագիրը, ելնելով իր ժամանակի (X դար) իրականությունից, երբ գոյություն ուներ մեկ Հայաստան՝ Մեծ Հայքը* (Μεγάλη 'Αρμενία)*, Բագրատունիների թագավորությունը: Մնացյալում երկու բնագրերը համընկնում են՝ «միաբանութեամբ յապստամբութիւն իմն թեւակոխեն»* - "εἰs αποστασιαν ομοφρονωs παντεs ορωσιν"*: Մի փոքր անց ցույց է տրված, որ նման լուրը «լուեալ* Դիոկղիտիանոս *խռովեցաւ ի սրտի իւրում»: Նույնը և Մետափրաստեսի մոտ* εταραχθη επι τουτοιs ο Καῖσαρ Διοκλητιανοs"*:*

*Դիոկլետիանոս կայսրը, լսելով «համայն Հայաստանը» քրիստոնյա դառնալու լուրը, «հրամայէր զմեծամեծս իւր առ ինքն կոչել… և զերիս աւուրս յառաւօտէ մինչև յերեկոյ… ի խորհուրդ մտեալ հաստատեցին ի միտս իւրեանց փոխադրել զկողմնակալսն զայնոսիկ՝ որք կարգեալք էին ի վերայ երկաքանչիւրոց ազգացն այնոցիկ* ("εκατερων τουτων των εθνων" *- «յուրաքանչյուր այս ազգաց», որ ավելի ճիշտ է և, հարկավ, ավելի կարևոր: Հունարենում «որք կարգեալք էին բառերը» չկան), վաշուէրս և անարիս զնոսա կարգալով: Եւ փոխանակ նոցա առաքեաց երկուս, որ եկեալ էին ի Հելլենացւոց գաւառէն… որ մին ի նոցանէ* Լիւսիաս *ճանաչիւր որ ամենայն Ջեմենտացւոց գաւառին ունէր ի դքսութիւն զիշխանութիւնն, երկրորդն որ կոչէր* Ագրիկողայոս*, որ զամենայն աշխարհաց զդատաւորական իշխանութիւնն ընձեռնեալ էր, և զզինուորութիւն ամենայն գնդիցն որ ի մէջերկրեայսն և ի մերձակայ գաւառսն (հունարենում* πολεσι *- քաղաքսն) բնակեալ էին»:*

*Հայերեն բնագրում Լյուսիասի վարած պաշտոնը («Ջեմենտացվոց գավառի դքսությունը») հստակ չէ, ավելի հստակ է Ագրիկոլայոսինը (նշենք, որ Լյուսիաս անունը հունական է, Ագրիկոլայոսը՝ հռոմեական, ենթադրենք, որ մեկը հույն էր, մյուսը՝ հռոմայեցի): Ագրիկոլայոսի պաշտոնը ավելի բարձր էր, նա վկայաբանության բնագրի այլ տեղում կոչված է հեգեմոն և դատաւոր (հասկանալի է՝ գերագույն):*

*Այս հատվածի առնչությամբ ուշադրության արժանի է կապադովկացվոց և հայոց ազգերի* (էթնոսների *- հունարեն բնագրում* εθνη*) հիշատակությունը և այդ «ազգաց» բնիկ ղեկավարության*[17] *և նրանց պաշտոնանկ արվելու փաստը:*

*Վկայաբանության հայերեն թարգմանությունը այնքան հստակ չէ այստեղ.* «Արդ հասանելով սոցա *ի գաւառսն յայնոսիկ» (էջ 436), այսինքն Կապադովկիա և Հայաստան: Մ. Ավգերյանի հրատարակած բնագրում* «Արդ ի հասանել *սոցա անդր» (էջ 483): Այստեղ Լյուսիասի և Ագրիկոլա-*

---

16 *Նշվում են հունարեն բնագրի սյունակները ըստ* J.P. Migne *հրատարակության:*

17 *Նման դարձվածք Մովսես Խորենացու մոտ «յազգէ բնիկ» (Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, աշխատութեամբ Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան. Տփղիս, 1913, էջ 311):*

յոսի տեղ հասնելու փաստն է արձանագրված: Սիմեոն Մետափրաստեսի բնագիրը ավելի հստակ է. "ἐπιστάντων οὖν αὐτων ταῖς ἐπαρχίαις ταύταις" (սյունակ 469), այսինքն, «երբ սրանք նշանակվեցին գլխավորելու հիշյալ նահանգների (կառավարումը)», «յազգէ ընիկ» ղեկավարների պաշտոնանկ արվելուց հետո[18]:

Լյուսիասը հաստատվեց Փոքր Հայքի Սատաղ քաղաքում, իսկ Ագրիկոլայոսը՝ Սեբաստիայում, և հիշվում է որպես ἐπαρξία-յի նահանգի կառավարիչ: Ե՛վ Սատաղը, և՛ Սեբաստիան Փոքր Հայքում էին գտնվում: Կապադովկիայի բնիկ հեգեմոնի պաշտոնանկությունից հետո վկայաբանության մեջ նրան փոխարինողի մասին խոսք չկա, պիտի ենթադրել, որ սկզբնական շրջանում Ագրիկոլայոսը գլխավորեց երկու նահանգները միասին: Թեև սուրբ Հիերոնի վկայաբանության մեջ ասված է, որ Ագրիկոլայոսը կառավարում էր «Հայոց երկիրը» (Փոքր Հայքը), իսկ Լյուսիասը «Կապադովկացոց»: Հիշյալ վկայաբանության մասին տե՛ս ստորև, էջ 27:

Անդրադառնանք քրիստոնեության ծավալ ստացած տարածքին («ամենայն աշխարհն Հայաստանեաց» - "ἅπασα ἡ Μεγάλη 'Αρμενία" - «ամենայն Մեծ Հայքը)»:

## 2. Վկայաբանության մեջ արձանագրված դեպքերի աշխարհագրական տարածքը

Քրիստոնեության տարածման մասին Հայաստանում գրում են V դարի հայկական աղբյուրները, որոնք և լայնորեն օգտագործվել են հետազոտողների կողմից: Օտար աղբյուրներից ուսումնասիրողներին հայտնի է Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցական պատմությունը»: Նա հարցին անդրադառնում է երկու անգամ: Առաջին անգամ, երբ նշում է Եգիպտոսի եպիսկոպոս Դիոնեսիոս Ալեքսանդրացու (253-255 թթ. միջև) հայոց Մերուժան ("Μερουζάνης") եպիսկոպոսին գրած «Վասն ապաշխարութեան» թղթի մասին («Գրեաց գարձեալ Դիոնեսիոս և առ Հայս վասն ապաշխարութեան, որոց եպիսկոպոս էր յայնժամ Մեհրուժան»)[19]: Հունարեն բնագրում՝ «"καὶ τοις κατα 'Αρμενιαν ὡσαύτως περὶ μετανοιας ἐπιστελλειν ὧν ἐπισκόπευε Μερουζάνης"[20]:

Ուսումնասիրողների համար գայթակղության վեմը (ինչպես կտեսնենք Եվսեբիոս Կեսարացու և երկրորդ հաղորդման առնչությամբ) վերաբերում է «Հայաստան» ('Αρμενία) տեղանվանը: Մերուժան եպիսկոպոսի նստավայրը ո՞րն էր: Անցնելով առաջ պիտի նշենք, որ մեր համոզմամբ ճիշտ է Ա.Հառնակը, որ ենթադրում է Փոքր Հայքը (Սեբաստիա քաղաքը)[21]: Իր գրքի երկրորդ հրատարակության մեջ, այդ ընթացքում արտահայտված

18 Հայ թարգմանիչը շփոթել է երկու բայ. հունարենի ἐφίστημι (ածական գերբայ) հոգնակի սեռական՝ ἐπιστάντων ἐφικνέομαι-յի հետ: Վերջինս իրոք «հասնել» է նշանակում:

19 Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն եկեղեցւոյ..., էջ 517:

20 Eusebii Caesariensis opera. Rec. G. D i n d o r f i u s, vol. IV, Historiae Ecclesiasicae. Lipsiae, 1890, p. 296 (VI, 46).

21 A. H a r n a c k. Mission und Ausbreitung des Christentums in den ersten drei Jahrhunderten. Leipzig, 1902, S. 471.

այլ կարծիքների ազդեցության տակ, Հառնակը թեև ընդունում է, թե Մերուժանը կարող էր Մեծ Հայքի եպիսկոպոս եղած լիներ, բայց և հարց է տալիս. «Բայց մի՞թե այդ ժամանակ այդ երկրում եպիսկոպոս ընդհանրապես եղել է»[22]:

Մերուժանին Մեծ Հայքի եպիսկոպոս են համարում Ն. Ակինյանը և Պ. Անանյանը:

Ա.Հառնակի կարծիքին, թե Մերուժանի նստավայրը Փոքր Հայքի Սեբաստիա քաղաքն էր, հակադրվեց Հ. Գելցերը, ելակետ ունենալով խնդրո առարկա անձնավորության Մերուժան անունը: Այն տարածված էր Մեծ Հայքում: Հ. Գելցերին համամիտ էր Ն.Ադոնցը, որը, սակայն, եպիսկոպոսի աթոռը տեղադրում էր ոչ թե Վասպուրականում, ինչպես Գելցերը, այլ Ծոփքում[23]:

Եր. Տեր-Մինասյանը միանում է Հ. Գելցերի կարծիքին և Մերուժանին համարում Արծրունյաց եպիսկոպոս[24]: Հակառակ եպիսկոպոսի աթոռի տեղադրման հարցում բարձրացած վեճին, որը կարևոր է Հայաստանում քրիստոնեության տարածման կոնկրետ շրջանը որոշելու համար, այդուհանդերձ դա արժեքավոր է քրիստոնեության առկայության ժամանակը որոշելու համար՝ III դարի կեսերը: Ելնելով սըբոց Եվստրատիոսյանց վկայաբանության տվյալներից, ամենահավանականն այն է, որ Մերուժան եպիսկոպոսը գործել է հենց Փոքր Հայքում: Պատահական չէ այն հանգամանքը, որ Գրիգոր Լուսավորիչը 302 թ. Կապադովկիայի Կեսարիա քաղաքում ձեռնադրվելուց հետո վերադարձին «աւուրս ոչ սակաւս» մնաց «ի քաղաքին Սեբաստացւոց»: Լուսավորիչն այնտեղ «դտանէր բազմութիւն եղբարց, զորս հաւանեցուցանէր ընդ իւր գալ, զի վիճակեցուսցէ զնոսա ի քահանայութիւն յիւրում աշխարհին (ասել է՝ Մեծ Հայքում - Հ. Բ.) և բազում գունդս գունդս յաճախեալ առնոյր ընդ իւր»[25]: Գրիգոր Լուսավորչի ձեռնադրած եպիսկոպոսները հիմնականում հունական[26] (և Աստվածաշնչային) անուններ էին կրում. Աղբիանոս (῾Αλβιανός), Եւտաղիոս (Εὐθάλιος), Մովսէս (Μωϋσῆς), Եւսեբիոս (Εὐσέβιος), Յովհաննէս

22 A. Harnach. Նշվ. աշխ., Բ հրատ., 1906, էջ 166: Ն. Ակինյան. Դիոնիսիոս Ալեքսանդրացի. Թուղթ Ապաշխարության և Մեհրուժան եպիսկոպոս Հայոց.– «Հանդես ամսօրյա», I (1949), էջ 63: Պ. Անանյան. Նշվ. աշխ., էջ 56-57: Հայաստան ասելով նա ամենևին Փոքր Հայքը նկատի չունի:

23 Н. Адонц. Армения в эпоху Юстиниана. СПб., 1908, с. 347: Նշում ենք բնագիրը և ոչ թե հայերեն թարգմանությունը, որը սխալմամբ Դիոնիսիոսի նամակը թվագրում է 248-265 թթ. (էջ 386), երբ հիշյալ թվերը Դիոնիսիոսի աթոռակալության տարիներն են, իսկ նամակը գրված է 253-255 թթ. միջոցին:

24 Եր. Տեր-Մինասյան. Հայոց եկեղեցու հարաբերությունները ասորվոց եկեղեցիների հետ. Էջմիածին, 1908, էջ 16: Ս. Վ. Կրիվովը հենց վերջերս հրատարակած իր հոդվածում ("Церковная история" Евсевия Кесарийского как источник Мовсеса Хоренаци.— Византийский временник. Т. 59(84), М., 2000, с. 115). Եվսեբիոս Կեսարացու Մերուժանին վերաբերող վկայության շուրջ ընթացած այնքան լուրջ և հանգամանալից վեճին անտեղյակ, փաստը ներկայացնում է որպես նորույթ և գրում, թե դա «Հայաստանի քրիստոնեության մասին շատ կարևոր վկայություն է՝ Հայաստանում քրիստոնյաների մասին շատ կարևոր վկայություն, Հայաստանում քրիստոնեության որպես պաշտոնական կրոն ընդունումից կես դար առաջ»: Նա «Հայաստանի» տակ Մեծ Հայքն է ենթադրում:

25 Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, էջ 421: Հմմտ. Մ. Օրմանյան. Ազգապատում. հ. Ա, Կ. Պոլիս, 1913, սյունակ 99-100:

26 Հմմտ. Մ. Օրմանյան. Նշվ. աշխ., սյունակ 99–100:

('Iωάνιτης), Ագապէս ('Αγάπιος), Անտիոքոս ('Αντίοχος), Կիւրակոս (Κυριάκος)[27], և ամենայն հավանականությամբ իր հետ Փոքր Հայքից բերված հայազգի «եղբայրներն» էին: Եթե նրանք հայ չլինեին, քրիստոնյա Հայաստանում ի՞նչ լեզվով պիտի քարոզեին: Բայց սրանց հետ միասին հիշվում են և երեք, հավանաբար ոչ հունական, թերևս հայկական անուններ. Արտիթէս, Արսուկէս, Տիրիկէս անունները[28], ուստի «Մերուժան» անունը, որ տարածված էր և Փոքր Հայքում չի, բացառված:

Եվսեբիոս Կեսարացու երկրորդ վկայությունը վերաբերում է քրիստոնյաների դեմ «Արևելից բռնակալ Մաքսիմինոսի» տաս տարի գործադրած հալածանքներին: Աղբյուրի համաձայն, յուրաքանչյուր քաղաքում սկսեցին հեթանոսական տաճարներ կառուցել, շտապ կարգով վերականգնել ավերվածները, քրմեր հաստատել: Ասել է թե՝ տվյալ պահին հեթանոսությունն արդեն զիջել էր իր դիրքերը, այդ թվում և հռոմեական Հայաստանում: Կայսեր մի հրովարտակում, որով նա ի վերջո թույլատրեց քրիստոնյաներին իրենց աստծուն ազատ պաշտել, նշված է նրա ամբողջ տիտղոսաշարը. «Ինքնակալ կայսր Գաղերիոս Վաղերիոս Մաքսիմիանոս (հունարեն բնագրում՝ "Μαξιμινος" - Մաքսիմինոս - Հ. Բ.): IX դպրության առաջին գլխում ևս Եվսեբիոս Կեսարացին նրան անվանում է ὁ ἐπ' 'Ανατολης τύραννος («Մաքսիմինոս՝ Արևելից բռնակալը»), իսկ նրա հրամանները տարածվում էին համայն Ասիայում: Նույն դպրության երկրորդ գլխում նրան դարձյալ կոչում է «τῶν ἐπ' 'Ανατολῆς ἄρχειν μερῶν» («ով նշանակվեց իշխելու Արևելից շրջանների վրա»):

Վիճահարույց է IX դպրության ութերորդ գլուխը: Այնտեղ, ի միջի այլոց ասվում է. «...Հանդերձ սոքիմբք (խոսքը տարածված սովի և մահ տարաժամի մասին է - Հ. Բ.) յարեաւ և պատերազմ ի բռնաւորէն ընդդէմ Հայոց (ὁ πρὸς 'Αρμενίους πόλεμος) որք ի սկզբանէ անտի բարեկամք և մարտակից էին Հռոմոց. զորս քրիստոնեայս և յերկրպագութիւն ճշմարտին Աստուծոյ փոյթս, նեղելով բռնաւորին ատելեայն Աստուծոյ զի կրոց և դիւաց զոհեսցեն, փոխանակ բարեկամաց թշնամիս, և փոխանակ նիզակակցաց պատերազմողս ընդդէմ իւր յարոյց գնոսա... Արդ նա հանդերձ զօրօք իւրովք ի պատերազմի անդ ընդդէմ Հայոց ի բազում ուրեք հարեալ վատթարէր առաջի նոցա: Իսկ որ միանգամ ընդ իշխանութեամբ նորա բնակեալ էին ի քաղաքս, սով և մահ սաստակէր զնոսա»[29]:

Եվսեբիոս Կեսարացու վերոբերյալ պարբերության մեջ հիշված «ընդդէմ Հայոց» բառերը ի՞նչ են նշանակում և ինչպե՞ս են մեկնաբանվել ուսումնասիրողների կողմից: Արտաշես Մարտիրոսյանը հետմահու լույս տեսած իր մի հոդվածում[30] նշում է մի շարք հեղինակների կարծիքները: Այսպես, ըստ Ա. Աննինսկու, Եվսեբիոսի հաղորդումը չի վերաբերում Մեծ Հայքին կամ բուն Հայաստանին, այլ նկատի ունի Կապադովկիայում, Պոնտոսի մի

27 Ագաթանգեղայ Պատմութիւն Հայոց, էջ 441-442:

28 Հ. Աճառյանը Արտիթէս և Արսուկէս անունների ծագումը անհայտ է համարում (Արսուկէսը թերևս Արսակէս է Արշակ), իսկ Տիրիկէսը կապում է հայերեն տեր բառին (տե՛ս Անձնանունների բառարան, հիշյալ անունները):

29 Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն եկեղեցւոյ..., էջ 688-689:

30 Ա. Մ ա ր տ ի ր ո ս յ ա ն. Հայաստանի քրիստոնեական դարձի թվականը, Աշտանակ. հ. Գ, Երևան, 2000, էջ 15:

հատվածում, Կիլիկիայում և Միջագետքի վերին շրջանում ապրող հայերին[31]: Հ. Մանանդյանը համամիտ է Գ. Ժ. Դյուշենի կարծիքին[32], համաձայն որի Մաքսիմիանոսը «պատերազմ էր մղել ոչ թե քրիստոնեության դեմ Մեծ Հայաստանի, այլ հռոմեական Հայաստանի, այսինքն՝ Անդրտիգրիսյան երկրներից մեկի դեմ»[33], ասել է՝ խոսքը աշխարհագրական տարածքի մասին է: Վերջապես Գ. Սարգսյանի կարծիքով կայսրը արշավել է Փոքր Հայքի և Արևմտյան Հայաստանի քրիստոնեական համայնքների դեմ, որոնք հավանարար անհանգստացնում էին նաև Տրդատին: Հետևաբար 301 թ. առաջ, երբ Տրդատը դեռ հեթանոս էր: Գ. Սարգսյանը այդ արշավանքը դիտում է իբր կայսեր և Տրդատի միջև քրիստոնյաներին ճնշելու համագործակցության օրինակ[34]:

Գ. Սարգսյանը միանգամայն իրավացի է, գտնելով, որ Մաքսիմիանոս կայսեր հալածանքները տեղի էին ունենում Հռոմեական կայսրության կազմում գտնվող Փոքր Հայքի քրիստոնյաների դեմ, բայց, հարկավ, դա չի առնչվում դեռևս հեթանոս Տրդատ III-ին, ոչ էլ Մաքսիմիանոս-Տրդատ համագործակցությանը:

Ավելի համարձակ ու կատեգորիկ են Ա. Մարտիրոսյանի դատողությունները: «Եթե ուղղակի հայեր է ասվում,– գրում է նա,– ամենից առաջ հասկացվում է բուն Հայաստանը: Մի քանի տողի մեջ Եվսեբիոսը երկու անգամ շեշտում է, որ նրանք բարեկամ և դաշնակից էին Հռոմին... Բարեկամ ու դաշնակից կարող է կոչվել համակիր, բայց անկախ երկիրը: Իսկ Հռոմի կայսրության մեջ ընդգրկված երկրները կայսրության մասն էին և ոչ նրա բարեկամն ու դաշնակիցը... Եթե Կեսարացին ասում է, որ Մաքսիմիանոս կայսրը արշավում է հայերի դեմ, որոնք բարեկամ ու դաշնակից էին, ապա խոսքը վերաբերում է անկախ երկրի՝ Մեծ Հայքին կամ բուն Հայաստանին»:

Շարունակելով իր միտքը, Ա. Մարտիրոսյանը փորձում է մեկնաբանել նաև Եվսեբիոս Կեսարացու «Արդ նա (Մաքսիմիանոս կայսրը - Հ. Բ.) հանդերձ զօրօք իւրովք ի պատերազմ անդ ընդդէմ Հայոց ի բազում ուրեք հարեալ վատթարէր առաջի նոցա» նախադասությունը: «Կեսարացին ասում է,– գրում է Ա. Մարտիրոսյանը,– որ Մաքսիմիանոսը պատերազմ հարուցեց և պատերազմում էլ ջախջախվեց («վատթարէր առաջի նոցա»): Սեփական երկրի դեմ, շարունակում է հոդվածագիրը,– պատերազմ չեն հարուցում, Մաքսիմիանոսը կարող էր ընդամենը պատժիչ արշավանք ձեռնարկել, և դժվար է ենթադրել, որ հռոմեական լեգեոնները կայսեր առաջնորդությամբ ջախջախվեին ընդամենը մի համայնքի դեմ պատերազմելիս, որ գտնվում էր Հռոմի տիրապետության տակ»[35]:

---

31 А. А н н и н с к и й. Древние армянские источники. Одесса, 1899, с. 68 – 69.

32 J. G. D u c h e s n e. L'Armenie chretienne dans l'histoire Ecclesiastique d'Eusebe. Melanges Nicole. Geneve et Bale. 1905, p. 103–109, *հայ. թարգմ.– «Հանդես ամսօրյա», 1910, էջ 268–271:*

33 *Հ. Մ ա ն ա ն դ յ ա ն. Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության. Հ. Բ. Երևան, 1957, էջ 127:*

34 *Գ. Ս ա ր գ ս յ ա ն. Ֆեոդալական հասարակարգի հաստատումը Հայաստանում.– ՊԲՀ, 1972, № 2, էջ 223:*

35 *Ա. Մ ա ր տ ի ր ո ս յ ա ն. Նշվ. աշխ., էջ 16:*

Ասվածի առնչությամբ շարադրենք մեր նկատառումները: Նախ «Հանդերձ սոքիմք յարեաւ և պատերազմ ի բռնաւորէն ընդդէմ Հայոց» նախադասությունը: Հունարեն բնագրում՝ "Τούτοις προσεπανίσταται τω τυράννω ὁ πρὸς 'Αρμενίους πόλεμος": Հայերենը միանգամայն ճիշտ է թարգմանված: Բայց "πόλεμος"-ը (պատերազմ) բառացի չպիտի վերցնել, խոսքը «պայքարին» է վերաբերում, իմաստն այն է, որ կայսրը պայքար (հալածանք) ձեռնարկեց ընդդեմ քրիստոնյա հայոց: Հունարեն "πολεμάω" չի նշանակում միայն «պատերազմել», այլև «պայքարել» (ներգործական): Ըստ Սոզոմենոսի Կոստանդիոս կայսրը Ալեքսանդրիայի կղերի դեմ "χαλεπως ἐπολέμησεν" («դաժան պատերազմ մղեց»): Եվ բայի կրավորական. Կոստանդին Մեծ կայսրը որոշեց Պարսկաստանի քրիստոնյաների դեմ "πολεμεῖσθαι" «պատերազմի բռնվել»: Նիկիայի ժողովում ընդունված դավանանքը, ըստ նույն Սոզոմենոսի, հետագայում "πολεμηθεῖσα", (նրա դեմ «պատերազմ մղվեց»)[36], այսինքն որոշման դեմ հակադրվեցին, այն վիճարկեցին:

Եվսեբիոս Կեսարացու խնդրո առարկա նախադասությունից չի կարելի եզրակացնել, որ կայսրը զենքը ձեռքին, իր լեգեոնների գլուխն անցած, արշավեց Հայաստան, ըստ Ա. Մարտիրոսյանի՝ Մեծ Հայք: Զարմանալին այն է, որ ըստ հոդվածագրի, Հռոմեական հուժկու կայսրության վեհապետը «ջախջախվում է» Տրդատ III-ի կողմից: Եթե այդպիսի բան իրոք տեղի ունեցած լիներ, քրիստոնյա հայ թագավորը, քրիստոնեությունը պետական կրոն հռչակողը ջախջախեր համաշխարհային կայսրության հեթանոսկռապաշտ կայսրին, ապա այդ դեպքը հայ միջնադարյան պատմագրության կողմից լռությա՞ն կմատնվե՞ր: «Վատթարէր» չի նշանակում «ջախջախվեց»: Հունարեն բնագիրն ունի. "Αὐτὸς μὲν οὖν περὶ τὸν πρὸς 'Αρμενίους πόλεμον ἅμα τοῖς αὐτοῦ στρατοπέδοις κατεπονεῖτο", այսինքն կայսրը իր զորքերով «մաքառում էր ընդդեմ հայոց»: «Վատթարէր առաջի նոցա»[37] դարձվածքը չպիտի անջատել «Հանդերձ սոքիմք» բառերից, որոնք հայոց վրա տարածված սովին ու մահ տարաժամին են վերաբերում, որ «սովն ու մահ տարաժամը կարծես քիչ էին, դրանց վրա բարդվեցին և կայսեր կողմից քրիստոնյա հայերի հալածանքները»: Արանց պիտի գումարել և Եվսեբիոս Կեսարացու նույն պարբերության վերջին հատվածը. «իսկ որ միանգամ ընդ իշխանութեամբ նորա (Մաքսիմիանոսի – Հ. Բ.) բնակեալ էին ի քաղաքս, սով և մահ սատակէր զնոսա»: Անկախ Հայաստանի՝ Արշակունյաց Մեծ Հայքի ո՞ր քաղաքներն էին գտնվում կայսեր իշխանության ներքո:

Երկրորդ: Եթե խոսքը վերաբերում է անկախ երկրի՝ Մեծ Հայքին կամ բուն Հայաստանին, ապա ինչպե՞ս բացատրել Մաքսիմիանոսի ձեռք առած

---

36 Sozomenus Kirchengeschichte herausgegeben von Joseph Bidez. Berlin, 1960, S. 69, 149, 243.

37 «Վատթարեմ» բայը (անցյալ անկատար, երրորդ դեմք՝ վատթարէր) կրավորական իմաստ չունի, այլ ներգործական - «վատթար կացուցանել, տկարացուցանել, նկուն առնել, ընդ վայր հարկանել» (Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի, «վատթարեմ» բառը): Նկատեմ, որ հունարեն բնագրում «առաջի նոցա» բառերի համապատասխանը չկա: «Վատթարէր»-ը Պ. Անանյանը հասկանում է այնպես, ինչպես Ա. Մարտիրոսյանը (նշվ. աշխ., էջ 51-52):

միջոցները ստիպելու իրենից անկախ երկրի բնակչությանը կուռքերին ու դևերին զոհ մատուցել ("εἰδώλοις θύειν καὶ δαιμοσιν ἐπαναγκάσαι πεπειραμένος"):

Անցնենք Եվսեբիոս Կեսարացու հիշատակությանն այն հայերի մասին, «որք ի սկզբանէ անտի բարեկամք և մարաակիցք էին Հռոմոց», և կայսրը իր գործի դրած բռնությունների պատճառով «փոխանակ բարեկամաց թշնամիս և փոխանակ նիզակակցաց պատերազմողս ընդդէմ իւր յարոյց զնոսա»: Հունարեն բնագրում. "ἄνδρας ἐξ ἀρχαίου φίλους τε καὶ συμμάχους 'Ρωμαίων" "ἐχθροὺς ἀντὶ φίλων καὶ πολεμίους ἀντὶ συμμάχων κατεστήσατο": Հունարենում ընդգծված բառերը՝ φίλος και σύμμαχος - «բարեկամ և դաշնակից» terminus technicus են: Հին Հռոմում «բարեկամ և դաշնակից» էին բնորոշվում կայսրության տարածքում ընդգրկված էթնիկ (բնիկ) բնակչությամբ նահանգները: Եվսեբիոս Կեսարացին ամենևին էլ նկատի չունի Արշակունյաց Հայաստանը՝ այլ հռոմեական Armenia նահանգը՝ Փոքր Հայքը: Այստեղ էր տեղակայված հայերից կազմված լեգեոնը[38]: Եվստրատիոսյանց վկայաբանության մեջ հիշվում է քրիստոնյաներից բաղկացած և Փոքր Հայքի Նիկոպոլիս քաղաքում տեղակայված լեգեոնը («ի զօրականացն յայնմ գնդէ՝ որ ի քաղաքին էին» (էջ 456), իսկ 45 սրբոց վկայաբանության մեջ հիշվում է "ἡ λεγεὼν πασα ἡ 'Αρμενία" («համայն հայկական լեգեոնը»):

Ինչպես Նիկողայոս Ադոնցն է գրում, Միհրդատ Պոնտացու «անկումից հետո (63 թ. մ.թ.ա. (Փոքր Հայքը) անցավ հռոմայեցիներին: Մեկ անգամ ընկնելով Հռոմի համաշխարհային քաղաքականության ոլորտը, նա այլևս չկարողացավ ազատվել կամ դուրս գալ նրա ազդեցությունից և հնազանդությամբ կրեց բախտի քմահաճույքները»: Բայց «հիմք չկա հայոց պատմությունից դուրս հանելու վաղուց ի վեր բնիկ հայ բնակչություն ունեցող մի ամբողջ շրջան»[39]: «Նրա մասին դոյություն ունեցող պատկերացումներն այնքան աղոտ են, որ շատերը չեն տարբերում Փոքր Հայքը Կապադովկիայից...»: Ն. Ադոնցի ասածը միանգամայն աչքի է զարնում սրբոց վկայաբանություններում, որոնցում այդ երկուսը միշտ միասին են հանդես' գալիս, կարծես մեկ նահանգ լինեն: Ինչպես կտեսնենք ստորև, սուրբ Վլասիոսի վկայաբանության մեջ խոսվում է «Կապադովկիայի Սեբաստիա քաղաքի» քրիստոնյաների մասին ("οἱ ἐν τη πόλει Σεβαστεία τῆs Καππαδοκίας") (հայերեն թարգմանության մեջ՝ «բնակիչք կապպադովկացւոց և որք ի Սեբաստիա քաղաքի»): Ավելի խառնաշփոթ է Եվստրատիոսյանց վկայաբանության Մաշտոցի անվան Մատենադարանի 1404 թ. արտագրված 1520 համարի ճառընտրում դրվածը: Խոսելով Եվստրատիոսի մասին (այստեղ նա հիշվում է իր բնիկ անունով՝ Տեր Հուսիկ), ցույց է տրվում, որ նա «էր ի քաղաքէն Արաւրակայ յաշխարհէն Գամրաց ի դաւառէն Սեբաստիոյ» (թերթ 193):

Անդրադառնալով Փոքր Հայքի և Կապադովկիայի բնակչության էթնիկական պատկանելության հարցին, Ն. Ադոնցը գրում է. «Ստույգ հայտնի

38 J.P. M i g n e. նշվ. աշխ., հ. 115, սյունակ 324:

39 Ն. Ա դ ո ն ց. Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում: Քաղաքական կացությունը ըստ նախարարական կարգերի. Երևան, 1987, էջ 81-82:

է, որ Կապադովկիայից անջատվելուց հետո Փոքր Հայքի գլխավոր քաղաքը դարձավ Մելիտենեն, իսկ երբ բաժանվեց I և II Հայքի, ապա նրա մեջ մտան ոչ միայն Սեբաստիա-Սըվազը, այլև Արաբիսոն-Յարփուզը, Կոկիսոն-Գյոքսունը և նույնիսկ Կոմանա-Շահրը ու Արիարաթիա-Ազիզիեն: «Համենայն դեպս տերիտորիայի նշանակալից մասը, չնայած սահմանային բոլոր փոփոխություններին, մշտապես մնաց Փոքր Հայքի կազմի մեջ իբրև նրա անկապտելի սեփականություն: Այդ մասը կարելի է անվանել Փոքր Հայք՝ proprie dicta: Այդ միանդամայն որոշակի նշված է Պտղոմեոսի մոտ, այսինքն՝ այն ժամանակ, երբ Փոքր Հայքը դեռևս միացված էր Կապադովկիային, և որ հիմք է տալիս ենթադրելու, թե այդ մասի բնակչությունը եթե ոչ ամբողջությամբ, ապա գերազանցապես բաղկացած էր հայերից»[10]:

Ինչպես վկայաբանության բովանդակության շարադրման առիթով ստորև կտեսնենք, դրա, ամենայն հավանականությամբ, հայ հեղինակը[41] Կապադովկիան չի համարում «հունաց երկիր»: Երբ Փոքր Հայքի և Կապադովկիայի բնիկ կառավարիչները հեռացվում են պաշտոնից, Դիոկլետիանոս կայսրը նրանց փոխարեն նշանակում է երկու անձանց ἐκ τῆς τῶν Ἑλλήνων χώρας ὁρμωμένους" (սյունակ 468) - «ծագումով հույների երկրից», վկայաբանության հայերեն թարգմանության մեջ «որ եկեալ էին ի Հելլենացւոց գաւառէն» (էջ 436): Ստացվում է, որ վկայաբանության հեղինակը Կապադովկիան հունական երկիր չի համարում: Չմոռանանք, որ ըստ Մովսես Խորենացու մոտ պահպանված հայկական ավանդության, առասպելական հերոս Մշակը «հրաման տայ բնակչաց աշխարհին (իմա՝ Կապադովկիայի - Հ. Բ.) ուսանել զխօսս և զլեզուս հայկական. վասն որոյ մինչև ցայսօր ժամանակի անուանէին Յոյնք զկղիմայն զայն Պռոտին Արմենիան, որ թարգմանի Առաջին Հայք: Եւ զդաստակերտն, զոր շինեալ յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ... անուանեն հինք աշխարհին՝ Մաժաք, որպէս ոչ կարելով ուղղախօսել. մինչև յետոյ յոմանց ընդարձակագոյն շինեալ՝ անուանեցաւ Կեսարիա»[42]:

Ն. Ադոնցը, հենվելով Անտոնինոս Օգոստոսի ուղեցույցի և Պևտինգերյան քարտեզի վրա, որոշում է Փոքր Հայքի տարածքը: Այն «ընկած էր Սեբաստիայի, Նիկոպոլսի, Սատաղի և Մելիտենեի սահմանային կետերի միջև...[13] Փոքր Հայքի ծայրամասերում ընկած այդ բոլոր քաղաքները միմյանց հետ կապված էին շրջանաձև ճանապարհով, այնպես որ Փոքր Հայքը գտնվում էր ռազմական գլխավոր ճանապարհների հանգույցում: Սեբաստիայից ճանապարհը դնում էր Նիկոպոլիս, Նիկոպոլսից՝ Սատաղ, այնուհետև՝ Զիմարա, Զիմարայից Մելիտենե և ապա՝ մինչև Սեբաստիա»: Անտոնինոսի ուղեցույցում Սատալայից Մելիտենե գծի վրա երկրորդ կետը

40 Նույն տեղում, էջ 88-89: Գրիգոր Լուսավորչին 302 թ. Կեսարիայում ձեռնադրող եպիսկոպոս Ղևոնդիոսը արդյո՞ք հույն էր... և Լուսավորիչը դեպքից առաջ Ղևոնդիոսի հետ անձամբ ծանոթ չէ՞ր:

41 Հայերեն գրերի չգոյության պայմաններում պիտի որ հունարեն գրեր:

42 Մ ո վ ս է ս Խ ո ր ե ն ա ց ի. Պատմութիւն Հայոց, էջ 46–47: Հմմտ. Ա գ ա թ ա ն գ ե ղ ո ս, էջ 415: («... ի կողմանս կապուտկացւոց, ի քաղաքն կեսարացւոց, զոր ըստ հայերէն լեզուին Մաժաք կոչեն»):

43 Ն. Ա դ ո ն ց. Նշվ. աշխ., էջ 90:

Arauracos է նշված[44]: Հենց այս քաղաքներն էլ կազմում են Եվստրատիոսյանց վկայաբանության աշխարհագրական միջավայրը:

Ն. Ադոնցը իր գրքի Փոքր Հայքին նվիրված գլխում ամենևին չի օգտագործել վարք-վկայաբանությունները, որոնք ոչ միայն փայլուն կերպով հաստատում են իր կռահումներն ու գատողությունները, այլև ընձեռում նոր կարևոր փաստեր հարցը ավելի խորն ու հանգամանալից հետազոտելու համար: Նինա Գարսոյանը, որ իրականացրել է Ն. Ադոնցի աշխատության անգլերեն թարգմանությունը և այդ թարգմանությանը կցել 263 էջից բաղկացած կարևոր հավելված (թեմային վերաբերող աղբյուրներ), նման և ոչ մի աղբյուր չի նշել[45]:

Սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանությամբ միանգամայն հստակ կերպով հաստատվում է Եվսեբիոս Կեսարացու նշած հայերի Փոքր Հայքի բնակիչներ լինելու հանգամանքը: Այդ մասին դեռ մանրամասն խոսք կլինի, բայց նշենք այստեղ, որ դեռ Մ. Ավգերյանը սրբոց Եվստրատիոսյանց իր հրատարակած վկայաբանության համառոտ նախաբանում գրել էր. «Հնդեքին սոքա (այն է՝ Եվստրատիոսը, Եվգենիոսը, Օրեստեսը, Ավքսենտիոսը և Մարդարիոսը – Հ. Բ.) փառաւորեալ վկայք՝ պարծանք Հայաստանեայց, էին ի սահմանաց աշխարհին Մեծ և Փոքր կոչեցեալ Հայոց: Պարագլուխ սոցա սուրբն Եւստռատիոս... էր հայրենեօք յԱրաբրակ քաղաքէ, մօտ յԵկեղեաց գաւառ... զինուորեալ ի դունդն կայսեր ական՝ որ յԱրևելս, յաւուրս Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի, և հասեալ յաշտիճան իշխանական արուեստեամբ քաջութեան, որ և իւրով օրինակաւ ձգեաց զնահատակակիցս իւր ի հանդէս վկայութեան վասն անուան մերոյ Յիսուսի Քրիստոսի: Եւ ունի պատմութիւն սքանչելի կատարման նոցա՝ միաձայնութեամբ ճառընտրաց հայոց, յունաց և հռովմայեցւոց»[46]:

### 3. Սրբոց Եվսարատիոսյանց վկայաբանության բովանդակությունը

Սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանությունը բավականին ընդարձակ է: Կաշխատենք նշել ամենակարևոր դրվագները, անհրաժեշտության դեպքում տալով բացատրություններ:

Ե՞րբ են տեղի ունենում դեպքերը: Ըստ վկայաբանության հայերեն թարգմանության, որն ինչպես ասվեց ներկայացնում է նախասկզբնական օրինակը, դրանք տեղի են ունենում Դիոկլետիանոս կայսեր օրոք: Վկայաբանության հայերեն թարգմանության մեջ, որպես կանոն հիշվում է մեկ կայսր՝ Դիոկլետիանոսը, Սիմեոն Մետափրաստեսի հունարեն բնագրում միաժամանակ իշխած երկուսը՝ "Βασιλεύοντος Διοκλητιανοῦ καὶ Μαξιμιανου" («ի թագաւորելն Դիոկղետիանոսի և Մաքսիմիանոսի»): Հայերեն թարգմանության մեջ Ագրիկոլայոս դատավորը կոչ է անում Եվստրատիոսին «հպատակ լեր հրամանաց ինքնակալին», իսկ Սիմեոն Մետափ-

44 Նույն տեղում:

45 N i c o l a s  A d o n t z. Armenia in the Period of Justinian. The Political Conditions Based on the *Naxarar* System. Translated with Partial Revisions, A Bibliographical Note and Appendices by Nina G. Garsoïan, Louvain, 1970.

46 Լիակատար վարք և վկայաբանութիւնք սրբոց..., հ. Թ, էջ 481-482:

րատեսի բնագրում՝ "ὑποκυπτε τοις θεσπίσμασι των κρατουτων" («Հպատակ լեր Հրամանաց ինքնակալացն»:) Եվստրատիոսը ըստ հայերեն թարգմանության պատասխանում է. «Հակառակիմ ընդ անաստուած Հրաման ինքնակալի ձերոյ»: Մետափրաստեսի տեքստում. ἀντιτάσσομαι τῳ προστάγματι των βασιλέων" («Հակառակիմ ընդ Հրամանն թագաւորացն»):

Շարունակության մեջ հայերեն թարգմանությունը ցույց է տալիս, որ «գրաւորական Հրամանք ինքնակալացն օրըստօրէ առաքեալ լինէին առ այնոսիկ՝ որ ըստ գաւառաց գաւառաց իշխանք և կուսակալք էին կարգեալք և Հրամայէին նոցա զգուշական տեսչութեամբ առ տօնս և ամսամուտս աստուածոցն զոհ և նուէրս մատուցանել երևելի պատուով[47]»:

Օրինակները կարելի է բազմապատկել, բայց բացատրությունը մեկն է. քրիստոնյաների դեմ հալածանքների մասին օրենքների հեղինակը Օգոստոս Դիոկլետիանոսն է: Հարցը հետևյալն է. դահին բարձրանալուց անմիջապես հետո Դիոկլետիանոսը իրեն կառավարչակից էր ընտրել իր հայրենակից Մաքսիմիանոսին: Դիոկլետիանոսը և Մաքսիմիանոսը կրում էին Օգոստոս տիտղոսը: 293 թ. երկու կայսրերը իրենց համար ընտրեցին կառավարչակիցներ: Կայսրության արևելյան մասում, որը կառավարում էր ինքը՝ Դիոկլետիանոսը, իր համար կառավարչակից ընտրեց Գայիոս Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոսին, իսկ Արևմուտքի Մաքսիմիանոսը կառավարչակից նշանակեց Գայիոս Փլավիոս Վալերիոս Կոստանդին Քլորոսին: Հիշյալ կառավարչակիցները կրում էին «Կեսար» տիտղոսը, և թեև օժտված էին կայսերական ողջ իշխանությամբ, «Կեսարները» «Օգոստոսների» համեմատությամբ ավելի ցածր աստիճանում էին գտնվում: Օգոստոսները համարվում էին «եղբայրներ», Կեսարները՝ նրանց «որդիները»[48]: Ուստի միանգամայն պարզ է, որ վկայաբանության Մաքսիմիանոսը Դիոկլետիանոսի կառավարչակիցն էր՝ Գայիոս Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոսը, և ոչ Դիոկլետիանոսի «եղբայր» Մաքսիմիանոսը: «Որդի» Մաքսիմիանոսին վստահված էր ողջ Արևելքի, ասել է Փոքր Ասիայի կառավարումը. ինքնըստինքյան հասկանալի է և Դիոկլետիանոսի քրիստոնյաների դեմ ընդունած որոշման կյանքի կոչումը:

Քրիստոնյաների հալածանքների ժամանակի մասին ավելի կոնկրետ են Գուրիայի, Սամոնայի և Աբիբի վկայաբանության տվյալները: Ըստ այդ աղբյուրի, հալածանքներն սկսեցին «Աղեքսանդր Մակեդոնացու թագավորության սկզբից հաշված վեցհարյուր տարի անց (խոսքը Սելևկյան կոչված տոմարին է վերաբերում, 600-րդ տարին հավասար է մ.թ. 289 թ.), և հռոմեական գայիոնին տիրացած Դիոկլետիանոսի իններորդ (293 թ.) տարին[49]:

Այստեղ կարևոր է նշել, որ միևնույն դեպքերը արձանագրված են նաև Երկրորդ Կապադովկիայից սերող սուրբ Հիերոնի վկայաբանության մեջ,

---

47 Եթե հայերեն թարգմանությունը լիովին համապատասխանում է հունարեն բնագրին, բերվում է հայերեն թարգմանությունը: Եթե հանդես են գալիս առանձին տարբերություններ, նշվում է համապատասխան հունարենը:

48 Н. А. Машкин. История Древнего Рима. М., 1950, с. 591—592.

49 Μαρτυριον των ἁγίων τοῦ Χριστοῦ μαρτυρων καὶ ομολογητων Γούρια, Σαμωνα καὶ 'Αβιβου. J.P. Migne. նշվ. աշխ., հ. 116, սյունակ 128:

որ նույնպես Սիմեոն Մետափրաստեսն է շարադրել: Այստեղ ևս ասված է, որ Դիոկղետիանոսին և Մաքսիմիանոսին «Հայտնվեց, որ ամենայն աշխարհն Հայոց և Կապադովկացվոց» քրիստոնեություն են դավանում և հակադրվում են իշխողների հրամաններին»[50] ("ἀγγελθεν αὐτοις ὡς πασα ἥ τε τῶν 'Αρμενιων χώρα και η Καππαδοκων, παρα φαυλον αὐτων το δογμα ποιοῦσι καὶ τοις προσταγμασιν ἀναπιπτουσιν"):

Ըստ Եվստրատիոսյանց վկայաբանության, Հայաստանի և Կապադովկիայի իշխանությունից հեռացված բնիկ կառավարիչներին «ի Հելլենացւոց գաւառէն» փոխարինելու եկած Լյուսիասն[51] ու Ագրիկոլայոսը էին «յոյժ իմաստունք և վարժք և կիրթք ամենայն հռետորական և փիլիսոփայական հանճարով, և խոհեմք խորագիտութեամբ քան զամենայն սինկղիտոսացն» (էջ 436): Ըստ էության այս դրական բնութագիրը Սիմեոն Մետափրաստեսի մոտ բերված է այսպես. "ἐν ἐπιστήμῃ πολλῇ τῆς πατρῴας παιδεύσεως ὑπαρχοντας" - («Նրանք քաջագիտակ էին հայրենական գիտության»):

Ըստ սուրբ Հիերոնի վկայաբանության, Լյուսիասին և Ագրիկոլայոսին ուղարկում են որպես կառավարիչ «յուրաքանչյուր ազգության վրա» - ("εἰς ἑκάτερον πεμπουσιν ἔθνος", սյունակ 110), մեկին հրամայեցին ղեկավարել Հայոց երկիրը, դա Ագրիկոլայոսն էր, իսկ մյուսին՝ Կապադովկացվոց երկիրը կառավարելու: Նրա անունը Լյուսիաս էր ("ὧν τον μεν ἑνα τῆς των 'Αρμενιων χώρας ἡγεισθαι παρεκελεύσαντο, 'Αγρικόλαος οὗτος ἦν, τον ἑτερον δὲ της Καππαδοκων ἐπιτροπευειν, Λυσιας αὐτῷ το ὄνομα", սյունակ 110): Ակնհայտ է սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանության տվյալների տարբերությունը: Այնտեղ, ինչպես տեսանք վերևում, Ագրիկոլայոսը հաստատվել էր Սեբաստիայում, Լյուսիասը՝ Սատաղում: Կապադովկիայի կառավարչի մասին հատուկ խոսք չկար:

Սուրբ Վլասիոսի վկայաբանության համաձայն, «Կապադովկիայի Սեբաստիա քաղաքի քրիստոնյաները Վլասիոսին ձեռնադրեցին եպիսկոպոս»: Ագրիկոլայոսի հալածանքներից խուսափելով, նա գնաց և բնակվեց Արգեոս լեռան մի քարայրում: Բայց երբ նա մուտք գործեց Սեբաստիա, Ագրիկոլայոս հեգեմոնը նրան բանտ նետեց[52]:

Ըստ սուրբ Սևերինոսի վկայաբանության, դուքս Լյուսիասը Լիկինիոս կայսեր օրոք (308-324 թթ.) Կեսարիայից (ասել է՝ Կապադովկիայից) շտապում է Սեբաստիա գալ՝ Սեբաստիայի քառասուն վկաների հարցով[53]: Մի այլ սրբի՝ Զենոբիոսի վկայաբանության համաձայն, Լյուսիասը, Դիոկղետիանոսի իշխանության սկզբում, մինչև Կապադովկիայի ղեկավարության անցնելը Կիլիկիայի էպարքոս էր նշանակված, և նա հաստատվել էր Մոպ-

50 Μαρτυριον τοῦ ἁγίου μεγαλομάρτυρος 'Ιερωνος καὶ των σὺν αὐτῶ ἁγιων των ἐν Μελιτηνῆ ἀθλησαντων, J.P. M i g n e. Նշվ. աշխ., հ. 116, սյունակ 110:

51 Ըստ Մաշտոցի անվան Մատենադարանի 1404 թվին արտագրված №1520 ճառընտիրի (թերթ 193)՝ «Նստաւ յատենի Լիւսիաս դատաւորն յԱտալիայ քաղաքէն»:

52 "Αθλησις τοῦ ἁγίου καὶ ἐνδόξου ἱερομάρτυρος Βλασίου ἐπισκοπου γενομενου Σεβαστειας, J.P. M i g n e. Նշվ. աշխ., հ. 116, սյունակ 817, 821:

53 Μαρτυριον του ἁγίου μεγαλομάρτυρος Σεβηριανοῦ, J.P. M i g n e. Նշվ. աշխ., հ. 115, սյունակ 640:

սուեստիայում (Մսխում)[54]: Հասկանալի է, որ Կիլիկիայում, Կապադովկիայում և Հայաստանում նրանց հիմնական պարտականությունը պետք է լիներ կայսեր՝ քրիստոնյաների դեմ ընդունած վճիռը կյանքի կոչելը:

Ըստ Եվստրատիոսյանց վկայաբանության, «Լիւսիաս դուքսն զբնակութիւն իւր ի Սատաղացւոց քաղաքին առնելով և զօրս գտանէր ի գաւառին յայնմիկ սուրբս արս կամ կանայս, յետ բազում հարցափորձութեանց և դառն տանջանաց՝ արձակէր զգուշական կապանօք առ Ագրիկողայոս դատաւորն ի մայրաքաղաքն Սեբաստացւոց, զվախճան սրոյ ընկալեալ ի նմանէ. և ոչ տայր թոյլ բնակել ի հայրենական գաւառսն իւրեանց, զի մի հանդիպեսցին դարմանի ուրեմն յընտանեաց կամ յազգականաց. նա զի ոչ ևս մարմինք նոցա օրինաւոր թաղման հասանելով պատշաճաբար գիցին ի գերեզմանի: Այսպէս և անօրէն Ագրիկողայոս արձակէր զըմբռնեալս ի Սեբաստիոյ ի Սատաղացւոց քաղաքն առ դուքսն Լիւսիաս, ղպատուհաս մահու կրել ի նմանէ» (էջ 437): Մտադրությունը, ինչպես պարզ ցույց է տրված վկայաբանության մեջ, ձերբակալված քրիստոնյաների ազգականների և համաքաղաքացիների հնարավոր ելույթներից խուսափելն էր:

Այս բոլորից հետո սրբոց Եվստրատիոսյանց վկայագիրը անցնում է վկայաբանության հիմնական նյութին. պատմվում է հինգ վկաներից գլխավորի՝ Եվստրատիոսի մասին և նշվում նրա պաշտոնն ու աստիճանը: Հունա-հռոմեական տերմինների հարցում ստիպված ենք դիմելու Սիմեոն Մետափրաստեսի հունարեն բնագրին, քանի որ հայ թարգմանիչը կամ չիմանալով դրանց իրական նշանակությունը, կամ ըստ սրբոց թարգմանչաց որդեգրած սկզբունքի, փորձում է թարգմանել, կամ ավելի ճիշտ՝ իմաստավորել, շատ հաճախ ոչ ճիշտ: Այսպես ուրեմն, Եվստրատիոսը դքսական դասի սկրինիարիոսն էր ("σκρινιάριοs της δουκικῆs ταξεωs") և տվյալ տարում այդ «դասի» ղեկավարն էր ("πρωτεύων ἐν αὐτῃ - սյունակ 469): Նա ջերմ հավատացյալ քրիստոնյա էր և պատրաստ էր նահատակվել հանուն Քրիստոսի: Ցանկանալով համոզվել իր նահատակությունը ընդունելի՞ է Տիրոջ համար, թե՞ ոչ, դիմում է հետևյալ քայլին. «Առ ինքն կոչէր զմի ումն ի ծառայից իւրոց, և դիշխանական դստին (Մետափրաստեսի տեքստում առանց «իշխանական» բառի), տայր ցնա, զի տարցէ յեկեղեցին քաղաքին յԱրաւրակացւոց, ուստի ինքն եկեալ էր» (էջ 437-438): Սա պարզ վկայում է, որ նախքան հալածանքները, քրիստոնեական եկեղեցիները ազատ գործում էին Փոքր Հայքում: Եվ շարքային քաղաքացիները ևս բավականին ազատ դավանում էին իրենց նոր կրոնը: Նշենք նաև, որ 302 թ. առոք փառոք, մեծ թափորով Կեսարիա օծվելու գնաց Գրիգոր Լուսավորիչը,և իշխանությունները նրան չխանգարեցին, վերադարձի ճանապարհին էլ կանգ առավ Փոքր Հայքի Սեբաստիա քաղաքում և այնտեղից բազում եկեղեցականներ իր հետ Մեծ Հայք բերեց: Ինչ վերաբերում է բանակին և սպայական կազմին, ապա այստեղ պետությունը խիստ էր, այդ իսկ պատճառով նրանց շարքերում քրիստոնյաները հիմնականում կրիպտոքրիստոնյաներ (քողարկված քրիստոնյաներ) էին:

---

54 Μαρτυριον του ἁγίου μαρτυροs Ζηνοβιου καὶ Ζηνοβίαs τῆs ἀδελφῆs αὐτοῦ. J.P. M i g n e. Նշվ. աշխ., հ. 115, սյունակ 1312:

Ծառան Եվստրատիոսի գոտին պիտի թաքուն Արավրակա քաղաքի եկեղեցու սուրբ սեղանին դներ և ուշադիր հետևեր, եթե երեց Ավքսենտիոսը գոտին վերցներ, չտայեր իրեն տեղեկացնել: Ավքսենտիոսը գոտին վերցնում է, ծառան այդ մասին հայտնում է Եվստրատիոսին, որի առթիվ սուրբը չափազանց ուրախանում է: Գոտին իշխանական նշանակ էր, դրանից զրկվելը պաշտոնանկություն էր նշանակում[55] և, Եվստրատիոսի համոզմամբ, նշանակ էր իր ցանկալի նահատակության հանուն Քրիստոսի: Այդ առթիվ նա Պրետորիոնի իր բոլոր ընկերներին հրավիրում է խնջույքի, որում «մի ոմն ի բազմելոցն ընդ նմա, որ էր հասակակից նորա (Մետափրաստեսի բնագրում` "νεώτερος τὴν ἡλικίαν ὑπάρχων" - «նա (Եվստրատիոսից) տարիքով ավելի երիտասարդ էր», սյունակ 472) և սիրելի բարեկամ և քաղաքակից (Մետափրաստեսի բնագրում` "ἐκ τῆς 'Αραυρακηνων καὶ αυτος ὑπαρχων πολίχνης" (սյունակ 477 - «նա ևս Արավրակացվոց քաղաքից էր»), որում անուն էր Եւգինէոս», հայտնում է, որ ինքը ևս քրիստոնյա է:

Դուքս Լյուսիասը մինչ այդ մահապատժի էր ենթարկել Արավրակա քաղաքի երեց Ավքսենտիոսին: Պարզելով, որ Եվստրատիոսը ևս քրիստոնյա է, «հրաման ետ զինուորացն մերկացուցանել զԵւստռատիոս, և ասէ. Արդ նախ կողոպտեսցի առաջի իմ յիշխանական պատմուճանացդ որ շուրջ զգովաւ, ի քղամիդէն և յոսկեհուռ հանդերձիցն և ի պատուական գօտւոյն, և այսպիսի օրինակաւ յայտնի լինիցի ամենեցուն օտարացեալ ի պատուոյ զինուորութեան» (էջ 441): Մետափրաստեսը Եվստրատիոսի վերոհիշյալ իշխանական նշանակներից հիշատակում է միայն χλαινη-ն և ζωνη-ն` պատմուճանն ու գոտին:

Սկսվում է Եվստրատիոսի հարցաքննությունը: Լյուսիասի հարցին Եվստրատիոսը պատասխանում է. «ՅԱրաւրակացւոց քաղաքէն[56] եմ ես ազգաւ և տոհմիւ, և անուն իմ Եւստռատիոս կոչի. ծառայ եմ ես արարչին իմոյ, արարողին զերկինս և զերկիր և խոստովանող Որդւոյ նորա Յիսուսի Քրիստոսի և ամենասուրբ Հոգւոյն. ի տղայական տիոց և ի մայրական խանձարրոց զպաշտօնս զայս ուսեալ եմ և երկրպագեալ» (էջ 441-442): Սիմեոն Մետափրաստեսի բնագրում. " 'Εκ τῆς 'Αραυρακηνῶν ὥρμημαι πολίχνης, Εὐστρατιος τοὔνομα, *Κυρισίκης τὴν ἐπωνυμίαν, τῇ πατρῴα διαλεκτω*, δουλος δε ὑπαρχω τοῦ Δεσποτου των ολων Θεου, και του προσκυνητοῦ Υιου αυτου 'Ιησοῦ Χριστου καὶ τοῦ αγιου Πνεύματος, ἐκ σπαργανων μητρικῶν τοῦτο το σεβas διδαχθεὶs προσκυνῶ" (սյունակ 473): Այս հատվածում հայերեն թարգմանության մեջ ընդգծված բառերը Մետափրաստեսի տեքստում բացակայում են, իսկ հունարենում ընդգծվածը չկա հայերեն թարգմանության մեջ, այն է. «անուն իմ Եւստռատիոս

55 Անգամ բյուզանդական երազահաններում երազում գոտուց զրկվելը պաշտոնանկություն էր կանխագուշակում (Φαίδων Κουκουλες. Βυζαντινῶν βιos καὶ πολιτισμός, τομos A, I, 'Αθῆναι 1947, σελ. 15):

56 Արավրակա քաղաքը գտնվում է Փոքր Հայքում, Նիկոպոլիս-Սատաղ ճանապարհի վրա, որին Ն. Ադոնցը բազմիցս է անդրադարձել իր աշխատության Փոքր Հայքին նվիրված գլխում (էջ 90-95): Այստեղ էր հաստատված հռոմեական սահմանապահ զորք լիմիտանեուսները: Ա. Երեմյանը տեղադրում է Մեծ Հայքում և գտնում, որ այն վերջինիս կազմում էր մինչև Հայաստանի առաջին բաժանումը` 387 թ.:

կոչի» բառերից հետո հունարենում դրված է. «մականվանյալ ըստ հայրենի բարբառի՝ Կիւրիսիկէս»: «Հայրենի բարբառը» հայերեն լեզուն է: Հայը հազիվ թե այս նախադասությունը ինքնաբերաբար կրճատած լիներ, Մետափրաստեսն այն ավելացրել է, հավանաբար, նման բանի հանդիպելով սուրբ Մարգարիոսին վերաբերող չարադրանքում: Եվ պարտավոր էր դա անել, քանզի Լյուսիաս դքսի հարցը Մարդարիոսին այդ էր պահանջում. «Նախ պատմեա ինձ... զբախտ և զանուն և զհայրենիս քո, և զգաւառն յորում ծնեալ ես» (էջ 441): Մետափրաստեսի բնագրում. ‘λέγε ... σὺν τῷ πατρῴῳ ὀνόματι καὶ την ενεγκαμενην” (սյունակ 473 - «քո բնիկ (հայրենի) անվան հետ[57] ասա նաև ո՞րն է ծննդավայրդ»: Մարդարիոսը Եվստրատիոսին դիմել էր “Δεσποσυνε Κυρισικη” ձևով՝ «Տէր Կիրիսիկէս» (սյունակ 481)»:

Լյուսիասը պահանջում է τάξις-ից իմանալ քանի տարի է Եվստրատիոսը ծառայում հիշյալ զորամասում (στρατεια): Պատասխանում են, թե երիտասարդ հասակից, որ քսանյոթ տարի է, ինչ լրացրել է էկսեպտորի (ἐκσέπτωρ) պաշտոնը: Լյուսիասի ասելով նա այդ պաշտոնը վարել է εὐτακτως «բարեխղճորեն»: Երբ նրան չի հաջողվում ստիպել Եվստրատիոսին ուրանալ հավատքն առ Քրիստոս, սուրբը ենթարկվում է սարսափելի կտտանքների, բայց տեղի չի տալիս: Հենց այստեղ մեջտեղ է գալիս վերոհիշյալ Եվգենիոսը, «ոմն ի զօրականացն... որ էր ի նմին քաղաքէ յԱրաւրակացւոց ուստի երանելին Եւստռատիոս, և իշխանական պատուով ի նորուն դասուցն գոլով», և աղաղակում է. «Լիւսիաս, Լիւսիաս, և ես քրիստոնեայ եմ»: Հայերեն թարգմանության մեջ Եվգենիոսը պարզապես ծառայում էր այն «դասում», ինչ Եվստրատիոսը: Մետափրաստեսի բնագրում նա “ὀφφικιάλιος τῆς αὐτῆς τάξεως” էր (սյունակ 477), այսինքն նույն «դասում» «օֆֆիկիալիոս»: Վերջին բառը հայերեն չի թարգմանվել: Ձերբակալվում է նաև Եվգենիոսը և Եվստրատիոսի հետ բանտ նետվում:

Հաջորդ օրը դուքս Լյուսիասը բանտից շղթայակապ դուրս է հանում Եվստրատիոսին և Եվգենիոսին ու ճանապարհ ընկնում դեպի Սեբաստիա: Ըստ հաստատված կարգի, որի մասին ասվել է վերևում, Լյուսիասի կողմից ձերբակալվածները դատվելու էին տարվում Սեբաստիա՝ Ագրիկոլայոսին, իսկ վերջինիս կողմից ձերբակալվածները Սատաղ՝ Լյուսիասին:

Լյուսիասը «հանդերձ բազմութեամբ զօրացն գայր հասանէր յետ երկուց աւուրց և բանակէր մերձ առ դղեկին (Մետափրաստեսի բնագրում՝ κάστρον - բերդ) որ է հուպ ի քաղաքն Արաւրակացւոց: Եւ ի հասանել

57 Ստացվում, որ Փոքր Հայքի և Կապադովկիայի հայերը երկու անուն ունեին, մեկը հունական կամ հռոմեական աշխարհի և իշխանությունների համար, մյուսը իրենց հարազատ շրջանում հայկական: Լյուսիասի հարցը դա լավագույնս հաստատում է:

Ագաթանգեղոսի մոտ կա գործվածքի համապատասխան հայերենը «հայրաբարբառ» (գլուխ ԾԻԳ) նախադասությունն է. «(սբ. Գրիգոր) եկեալ հասեալ երևեալ հայրաբարբառ հայերէնախօս գտավ» հայոց երկիրը: Հունարեն Ագաթանգեղոսը համապատասխան տեղում ունի. “(Γρηγόρισς) εἰς μέσον παρελθων, το ζωοποιον κηρυγμα του εὐαγγελίου τοῦ Χριστοῦ επειράθη τῇ των Ἀρμενίων γλωττη” «(Գրիգորը) հանդես եկավ և Քրիստոսի կենարար Ավետարանը փորձեց հայոց լեզվով քարոզել») – Agathangelus und die Akten Gregors von Armenien, neu herausgegeben von Paul de Lagarde, Gottingen, 1887, S. 80

*սրբոց անդր՝ ամենայն բնակիչք քաղաքին անորիկ ելանէին տեսանել (հունարեն բնագրում՝ ἐπιποθοῦντες ἰδεῖν - «բաղձալով տեսնել») զերանելիսն. բայց ոչ ոք յազգականաց կամ ի բարեկամաց սիրելեաց նորա (Եվստրատիոսի-Հ. Բ.) իշխէր մերձենալ առ նա վասն երկիւղի իշխանին, զի մի և նոքա ըմբռնեսցին»: Սա հստակ ապացույցն է, որ Արավրակա քաղաքի բնակչությունը հիմնականում քրիստոնյաներ էին:*

*Վկայաբանության հեղինակը արդեն անցնում է սուրբ հնգյակի չորրորդ անձին («ռամիկ» մեկին (ἰδιώτης), որ անվանված է Մարդարիոս (Μαρδάριος): Սա հնգյակի միակ անձնավորությունն է, որի «անունը» հունական չէ: Բայց արդյո՞ք Մարդարիոսը անուն է: Համոզված ենք, որ դա ցեղանուն է, առնչվում է «մարդ» ցեղին: Մարդերը դեռ շատ վաղուց հաստատվել էին Հայաստանում, նրանց բնակության դավառները կոչվեցին Մարդաստան և Մարդաղի: Նրանք Պլինիոսի օրոք արդեն հայացած էին: Վերջինս հիշում է* armenomardi *ցեղը*[58]*: Արդ, եթե «անվան» -* άριος *վերջածանցը փոխարինենք նույնիմաստ —* αίτης*-ով, կստանանք* Μαρδαίτης *- մարգայիտ: Նրանցից կազմված բյուզանդական նշանավոր հայկական գնդերը հիշվում են VII դարի կեսերից*[59]*: Ի դեմս Մարգարիոսի մենք ունենք մարգայիտների հնագույն հիշատակությունը*[60]*:*

*Մարդարիոսը, երբ իր տան տանիքն էր նորոգում, սրբերի մեջ նկատելով սուրբ Եվստրատիոսին, ասում է կնոջը* «ի բարբառ հայերէն» *(հունարեն բնագրում՝ τῇ Ἀρμενίων διαλέκτῳ - «հայոց բարբառով»). «Ո՛վ կին, տեսանե՞ս զտէրն մեր Եւստրատիոս անուանեալն* Կիւրիսիկոս *(հունարենում* Κυριώικος*),* զիշխան ամենայն շրջաբնակութեանս մերոյ, *զի ի բաց լքեալ արհամարհեաց զգերապատիւ և զայնպիսի մեծութիւն և զփառս աշխարհիս, և զամենայն երևելի փարթամութիւն ընչից և ազգի և ստացուածոց, և զքաջամարտիկ զինուորութիւնն զոր ոչ ոք ունէր նման նմա ի մէջերկրայքս ամենայն. և ընդ այլ կալանաւորսն երթայ ի տեղի հանդիսի ի յասպարէզ կատարման և վկայական նահատակութեան, զի զկնի ցանկալի կենցաղավարութեան իւրոյ զհաւիտենական թագաւորութեանցն ժառանգեսցէ զառհաւատաչեայ բարութիւնսն» (էջ 449):*

*Ինչպես վերևում արդեն նշեցինք, դեռ հնուց բացատրել էին, թե Կիրիսիկէս հունարեն* Κυρ *(կիր - տէր) և Հուսիկ անունն է, և որ Եվստրատիոսի բնիկ անունը Տեր Հուսիկ է: Այսպես, հայկական ճառընտիրներում (հմմտ. 1404 թ. արտագրված Մաշտոցի անվան Մատենադարանի թիվ 1520 գրչագրում). «Ասէ Մարդարիոս ցկինն իւր. տեսանե՞ս զի ահա* տէրն *մեր* Յուսիկ *երթայր ի մարտիրոսութիւն» (թերթ 194):. Նույն ձեռագրում Եվստրատիոսի մասին ասված է նաև, թե նա «էր ի քաղաքէն Արաւրակայ*

---

58 Plinii Naturalis Histroia. VI, 10. *Հմմտ. Ն. Ադոնց. նշվ. աշխ. էջ 464:*

59 *Մանրամասն տե՛ս* Р. М. Бартикян. Разрешение проблемы мардаитов. — *«Լրաբեր հաս. գիտ.», 1983, №2, էջ 66-82: Նշենք այստեղ, որ Պտղոմեոսը (V 6, 18) Փոքր Հայքում նշում է* Μάρδαρα *անունով քաղաք. Ն. Ադոնց. նշվ. աշխ. էջ 89, ծանոթ. 2:*

60 *Հարկավ միամիտ է «անվան» Մ. Ավգերյանի ստուգաբանությունը. «Մարդարիոս ոմն, որ և Մարդայր ասի», որ իբր հայերեն և հունարեն բնագրերում գրված է «Մարդայր», որը «և այս երևի բնիկ հնչումն հայերէն, որ յոյնք հելլենացուցանելով գրեցին Մարտարիոս (որ և լինի Մարտայր. իբր այր մարտի կամ արի). և ի մեզ անգրէն փոխանցեալ եղե. Մարդարիոս» (Լիակատար վարք և վկայաբանութիւնք սրբոց..., հ. Թ, էջ 534:*

յաշխարհէն Գամրաց ի դաւառէն Աեբաստիոյ: Եւ էր պատուով ի դքսական կարգէն ի հարկաւորացն: Եւ էր բնական (ասել է՝ բնիկ -Հ. Բ.) անունն նորա աէր Յուսիկ» (*Թերթ 193*):

Կնոջ խորհրդով Մարդարիոսը միանում է Եվստրատիոսին՝ իրեն զոհաբերելու հանուն Քրիստոսի, նախապես չտապելով «ումեմն մեծատան, որ էր այր երևելի, և էր երկիւղած ի Տեառնէ, ի նմին գեղջ (հունարեն բնագրում՝ ἐν τῆ ᾿Αραυρακηνῶν την οἴκησιν ἔχοντα, και *πρωτεύοντα ἐν* αὐτῆ, ἄνδρα ἐπίσημον καὶ πλούσιον πανυ - «Արավրակացվոց (քաղաքում) բնակվող՝ նրա գլխավորը (առաջինը) նշանավոր և արտակարգ հարուստ մարդու»), որում անունն էր Մուսատարիոս (հունարենում Μουκάτωρ - Մուկատոր), և ասէ ցնա երանելին Մարդարիոս. Ահաւասիկ գնամ ես առ սիրելին քո և ազգակիցն Եւստռատիոս, դի ընդ նմա զջան նահատակութեան յանձն առեալ վկայեցից վասն ճշմարտութեանն, կամելով Աստուծոյն մերոյ» (էջ 450): Մարդարիոսը խնդրում է Մուկատորին հոգալու իր ընտանիքի և զավակների մասին, ինչը Մուկատորը խոստանում է, ասելով. «երթ ի խաղաղութիւն... և զընթացս քո կատարեա ըստ հաճոյից Տեառն Աստուծոյ մերոյ»: Եթե Մուկատորը «երկիւղած էր ի Տեառնէ» և պաշտում է նույն աստծուն, ինչ քրիստոնյա Մարդարիոսը, ուրեմն Արավրակայի քաղաքապետը ևս քրիստոնյա էր:

Մարգարիոսը միանալով Եվստրատիոսի խմբին «ի ձայն բարձր աղաղակեաց և ասէ. Քրիստոնեայ եմ իբրև դպատուական տէրս իմ Եւստռատիոս, լուարուք զայս ամենայն պաշտօնեայք սատանայի» (էջ 451):

Մարդարիոսը նախքան դատաքննության ենթարկվելը, դիմելով Եվստրատիոսին, հարց էր տվել. «Տէր իմ Եւստռատիէ[61], աղաչեմ քեզ... ուսո՛ ինձ թէ զինչ տաց պատասխանի յատենի անդ ապականիչ և չար գազանին այնոսիկ (Նկատի ունի դուքս Լյուսիխասին - Հ. Բ.): Պատասխանի ետ սուրբն Եւստռատիոս և ասէ ցնա. եղբայր իմ Մարդարիէ, բնաւ ամենևին զոր ինչ հարցանէ զքեզ, այլ ինչ մի՛ տացես նմա պատասխանի. բայց միայն ասա թէ քրիստոնեայ եմ և Քրիստոսի ծառայ, և մի՛ փոխեսցիս ի բանից յայսցանէ» (էջ 452-453): Հռոմեական իրավունքի մասնագետները կպարզեն, թե նման վարվելակերպը ինչ էր տալիս ընդդատյա անձնավորությանը: Սիմեոն Մետափրաստեսի բնագրում այդ բառերից հետո ցույց է տրված Մարգարիոսի սոցիալական դրությունը. «Ինչ պատասխանեմ այդ կործանիչին, թերևս այդ վայրենի գայլը ինձ որպես գյուղացու (χωρικον) և «անգրագետի (ἀγράμματον) ծանակի» (սյունակ 484): Իսկ 1404 թ. ճառընտիրում նա համարվում է «այր մի ի շինականաց» (*Թերթ 194*):

Լյուսիխասի հրամանով նախ գլխատում են երեց Ավքսենտիոսին: Մահապատիժը կատարվում է Արավրակա քաղաքին «մերձ ի ձորակ անդր, զոր մեք Լեռնոտն անուանեմք» (էջ 459): Հունարեն բնագրում տեղանունը ᾿Ορωρεια է (սյունակ 488): Հայերենում թարգմանված է տեղանունը, չի բացառվում, որ տեղի է ունեցել հակառակը՝ հայերեն տեղանունն է հունարեն թարգմանվել: Այնուհետև մահապատժի են ենթարկում Եվգենիոսին:

---

61 Եվստռատիէ (Մարդարիէ) հունարեն կոչական հոլովն է՝ «Ո՛վ Եվստրատիոս», «Ո՛վ Մարդարիոս»:

Լյուսիաս դուքսը դաշտում կազմակերպում է զորավարժություններ, ապա «իջանէր ամենայն բանակաւն ի դաշտ անդր, ի հանդիսի անցուցանել և համար առնել զօրացն արքունի» (էջ 454)։ Յայնժամ երևեալ ոմն ի մէջ բազմութեան զօրացն գեղեցիկ և հոչակելի տեսլեամբ զարդարեալ, որում անուն էր Ովրեստէս. այր քաջ և վայելուչ պանծալի հասակաւ, լցեալ ամենայն խոհեմական իմաստութեամբ և հանճարով, զօրաւոր բանիւք և արդեամբք, և կիրթ առ մարտիցն յառաջադիմութիւն» (էջ 454-455)։ Երբ «ի հանդերձիցն երևեցաւ խաչ մի ոսկի որ կայր թաքուցեալ ի գրապանակ պատմուճանի նորա», պարզ դարձավ, որ Ովրեստեսն էլ քրիստոնյա է։ Նա ասաց Լյուսիաս դքսին. «Ծառայ եմ ես խաչելոյն Յիսուսի Քրիստոսի... և զնչանդ զայգ կրեմ ի պահպանութիւն անձին իմոյ» (էջ 455)։ Նրան ևս, կապանքների մեջ առնված, միացնում են Եվստրատիոսի խմբին և շարժվում դեպի Նիկոպոլիս։ «Եւ ի հասանել դքսին ի քաղաքն Նիկոպոլսացւոց մեծապայծառ հանդիսիւ, բաղումք ի զօրականացն յայնմ գնդէ՝ որ ի քաղաքին էին (խոսքը Նիկոպոլսում տեղակայված «հայոց լեգեոնին» է վերաբերում - Հ.Բ.) մատեան առ իշխանն Լիւսիաս մեծաւ համարձակութեամբ, ազազակեցին միով բերանով և ասեն. Ով Լիւսիաս, և մեք քրիստոնեայք եմք, և զինուորեմք երկնաւոր թագաւորին Յիսուսի Քրիստոսի... Զայս և առաւել քան զսոյն միաբան բազմութիւն զօրականացն՝ որք ի քաղաքի անդր կային՝ աղաղակէին առաջի իշխանին» (էջ 455-456)[62]։

Լյուսիասը տեղի ունեցածից սարսափեց «զարհուրեցաւ դուքսն... երկեաւ ի բաղմութենէ քաղաքացեացն, զի մի յանդուգն յարձակմանէն չար ինչ հանդիպեսցի նմա»։ Նա վախեցավ նաև, որ հանկարծ կարող է տեղի ունենալ «չփոթումն ինչ ի քաղաքացեաց կամ յազգականաց մանաւանդ յեւստրատիոսէ։ Դարձեալ ասէ. Գուցէ տանջանս հասուցանելով նմա, նոյնպէս հրաշ սքանչելեաց երևեսցին, որպէս և յառաջնումն նուագին. և ոչ միայն որ քրիստոնեայքն են հաստատեսցին ի հաւատսն, այլ և զհելլենացիս (իմա՝ հեթանոսներին - Հ. Բ.) ապստամբեցուցանէ ի յերկրպագութենէ աստուածոցն մերոց» (էջ 456)։ Բայց հանդստացավ, երբ պարզեց, որ նրանք «որպէս խաչինս երկնաւոր հովուին կամաւ ի մահ մտանեցին զամէնս իւրեանց» (էջ 456)։

Լյուսիասը Եվստրատիոսին և Ովրեստեսին համապատասխան բացատրագրով ուղարկում է Սեբաստիա Ագրիկոլայոսի կողմից դատվելու։ Բացատրագրում Եվստրատիոսը բնութագրվում է որպես «ոչ անտեղագոյն իմաստասիրական վարժարաց արհեստից, և ստաղիացն ի մարտակցութիւն յոյժ է կրթեալ, և ծայրագոյն զինուորութեան գահաւորութեան ժամանեալ... և յետ բազում քննութեանց և հարցմանց անյոյս եղեալ ի դորին փրկութենէ, առաքեցի կապանօք առաջի քո տէրութեանդ զի դու զարժան վրիժուցն անարգութեան գիցն խնդրել մարթայցես քո արդար դատաստանօքն» (էջ 458)։ Սույն պարբերությունում ընդգծվածը Մետափրաստեսը չունի։

Նիկոպոլսից հինգ օր ճանապարհ կտրելով, սրբերը հասնում են Սեբաստիա։ Ագրիկոլայոս հեգեմոն-դատավորի կողմից կայանում են Եվստրա-

62 Պահպանվել է Նիկոպոլսում տեղակայված «հայոց լեգեոնի» քրիստոնյա զինվորների վկայաբանությունը։ Տե՛ս ստորև։

*տիոսի դատաքննությունն ու դատավարությունը, որոնց մասին տե՛ս առանձին ստորև:*

*Մահապատժի է ենթարկվում Ովրեստեսը, որին ներկա էր և Եվստրատիոսը:* «Անթիւ բազմութիւն շուրջ զնոքօք, այլ և արք քաղաքին Սեբաստիոյ հանդերձ կանամբք և որդւովք ժողովեալ էին ի տեսիլ սրբոցն, և դիզէին կուտէին մի զմիով որ ոչ գոյր թիւ» *(էջ 467):*

*Եվստրատիոսին վերադարձնում են բանտ: Այնտեղ նա ծառայից խնդրում է գրելու թուղթ բերել իր կտակը կազմելու համար: Բայց նախքան կտակը, սուրբը, ըստ վկայաբանության, դրում է «զամենայն հանդէս նեղութեանցն՝ որ հասին ի վերայ նորա», այսինքն մի շարադրանք, որ հետագայում վկայադիրը օգտագործելու էր վկայաբանությունը շարադրելիս: Կտակում Եվստրատիոսը կարգադրեց, որ իր և մնացած սրբերի նշխարները տարվեն «ի հայրենի բնակութիւն իւրեանց յԱրաւրակացւոց քաղաքն և դնել յայցելում տեղւոջ որ կոչի Բոսոսա (հավանաբար՝ (Անա-լի)բոսոսա, հունարեն բնագրում՝* 'Αναλιβόζορα *(Անալիբոզորա)*[63] *հանդերձ և այլովքն՝ որ ընդ նմա կատարեցան, Ովրեստիւ, Մարդարիոսիւ, Աւքսենտիոսիւ, Եւգինէոսիւ» (էջ 468): Կտակում նա մանրամասն ցուցք տվեց ինչպես բաժանել իր ունեցվածքը: Արավրակայի իր կալվածքը նախատեսեց տալ իր և մնացյալ սրբերի աճյունների վրա կառուցվելիք վկայարանի սպասարկուներին: Ինչ վերաբերում է շարժական գույքին, ապա հանձնարարեց դրա կեսը բաժանել աղքատներին, իսկ մնացյալ կեսը տալ իր քույրերին: Կարգադրեց նաև ազատ արձակել իր ստրուկներին՝ տալով նրանց ևս ժառանգություն (սյունակ 501):*

*Սեբաստացվոց եպիսկոպոս «Վլասիոս կամ Պետրոս... զնշխարս սրբոց վկայիցն... բարձեալ տանէր ի հայրենի գաւառն իւրեանց՝ ի քաղաքն Արաւրակացւոց... ի տեղւոջն, զոր սրբոյ վկային նշանակեալ էր ի կտակի անդ իւրում: Իսկ յետ գադարման հալածանացն՝ շինեաց վկայարանս ի վերայ հանգստարանի սրբոցն հնգեցունց անյաղթ վկայիցն Քրիստոսի, Աւքսենտիոսի, Մարդարիոսի, Եւդինէոսի, Ովրեստի և մեծին Եւստռատիոսի» (էջ 533)*[64]*:*

*Սուրբ Եվստրատիոսին դաժանագույն մահապատժի են ենթարկում: Նրա մահվան առթիվ, ըստ վկայագրի, «ամենայն ամբոխն որ շուրջ կային... զկական բարձեալ ողբերգական ձայնիւ լային, և ամենայն Հելլենացւոց (հեթանոսաց -Հ. Բ.) բազմութիւնք հանդերձ քաղաքացեօքն, և մորմոքէին ի վերայ այնպիսւոյ առն իմաստնոյ» (էջ 471-472):*

## *4. Սրբոց Եվստրատիոսյանց պատմությանն առնչվող այլ վկայաբանություններ*

63 *VII դարի Աշխարհացույցի Աղիւնը և Պտղոմեոսի* Analibna, Analib*a կամ* Analibla*-ն, ընդ որում Աղիւնը նահանգ է, իսկ Անալիբնան քաղաք: Պտղոմեոսը դրանք տեղադրում է Փոքր Հայքում: Ն. Ա դ ո ն ց. նշվ. աշխ., էջ 68:* 'Αναλιβόζορα *տեղանվան վերջին չորս տառերում* ζορα *չի կարելի չնկատել հայերեն «ձոր» բառը:*

64 *Սրբոց վկայից աճյունների վրա կառուցված այլ վկայարանների մասին տեղեկությունների հանդիպում ենք և այլ վկայաբանություններում:*

Այս աշխատությունը հիմնված է սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանության վրա, քանի որ թեմայի համար, այլ վկայաբանությունների համեմատությամբ, ընձեռում է ամենաարժեքավոր ու հանգամանալից փաստեր: Աշխարհագրական նույն տարածքի վրա և Եվստրատիոսյանց վկաների ժամանակ ապրած ու գործած և իրենց քրիստոնեական հավատքի համար տանջամահ արված այլ սրբերի վկայաբանությունները լրացնում են մեր հիմնական աղբյուրը և առանձին դեպքերում ոչ պակաս կարևոր են: Հետաքրքրականն այն է, որ վերջիններիս դեպքում էլ հալածանքները ղեկավարող հռոմայեցի բարձրաստիճան գործիչները նույն Ագրիկոլայոսն ու Լյուսիասն են:

Սուրբ Եվստրատիոսյանց վկայաբանությանը համահունչ է սուրբ Հիերոնի վկայաբանությունը, ուր խոսվում է Դիոկլետիանոսի և Մաքսիմիանոսի քրիստոնյաների նկատմամբ ձեռնարկած հալածանքների մասին: Հիերոնի հայրենիքը Երկրորդ Կապադովկիայի Տիանա քաղաքն էր: Կայսրերին հայտնվում է, որ «համայն Հայոց երկիրը և կապադովկացոց (πασα ή τε των 'Αρμενιων χώρα και ή Καππαδοκων), ի հենուկս նրանց, քրիստոնեություն են գավանում և կայսրերի հրամաններին չեն ենթարկվում: Կայսրերը երկար խորհրդակցելուց հետո ընտրում են երկու խորամիտ, խորամանկ և հմուտ անձնավորությունների, ուղարկում են մեկին կառավարելու Հայոց երկիրը (*իմա Փոքր Հայքը – Հ. Բ.*), նա Ագրիկոլայոսն էր, իսկ մյուսին՝ կապադովկացոց կառավարելու (ἐπιτροπεύειν). Նրա անունը Լյուսիաս էր»[65]:

Սուրբ Հիերոնին գլխատում են Փոքր Հայքի մայրաքաղաք Մելիտենե քաղաքում, նրա հետ նաև երեսուն մելիտենացի քրիստոնյաների:

Ըստ սուրբ Զենոբիոսի վկայաբանության, Դիոկլետիանոս կայսեր իշխանության սկզբում Լյուսիասը նշանակվել էր Կիլիկիայի էպարքոս (της Κιλικων έπαρχον προχειρίζεται): Նա հաստատվեց Մոպսուեստիայում (Մսիսում) և քրիստոնյաների դեմ դաժան հալածանքներ կազմակերպեց[66]: Հավանաբար, իր «հաջող» գործունեության համար Լյուսիասին այնուհետև Կիլիկիայից ուղարկում են Կապադովկիա և Փոքր Հայք իր գործունեությունը Ագրիկոլայոսի հետ շարունակելու:

Դուքս Լյուսիասը գործեց նաև Լիկինիոս կայսեր օրոք (վերջինս իշխում էր Կոստանդին Մեծի հետ միասին 307-324 թթ.): Այդ մասին մանրամասն խոսվում է Սեբաստիայի Քառասուն մարտիրոսաց վկայաբանության մեջ: Վերջինիս համաձայն նրանք «էին զինուորք... ի Գամրաց գաւառին (*Կապադովկիա - Հ. Բ.*) ի գնդի (*իմա՛ լեգեոնի - Հ. Բ.*) միում»: Ագրիկոլայոսը, որն այստեղ նույնպես ներկայացված է որպես դատավոր, սպա-

---

65 Μαρτυριον τοῦ άγιου μεγαλομάρτυρος 'Ιερωνος καὶ των συν αυτω άγιων των εν Μελιτηνῆ αθλησάντων. J.P. M i g n e. *Նշվ. աշխ., հ. 116, սյունակ 110, 113: Սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանության մեջ Լյուսիասը Սատաղում էր հաստատված և գլխավորում էր սահմանապահ զորքը: Այնտեղ Կապադովկիայի նոր կառավարչի մասին խոսք չկար: Ըստ Հիերոնի վկայաբանության, դուքս Լյուսիասը Կապադովկիայի կառավարիչ է նշանակված:*

66 Μαρτυριον του άγίου μάρτυρος Ζηνοβίου καὶ Ζηνοβιας τῆs αδελφης αυτου. J.P. M i g n e. *Նշվ. աշխ., հ. 115, սյունակ 1312: Ինչպես տեսանք, ըստ 1404 թ. ճառընտիրի, Լյուսիասը գործել էր նաև Ատալիայում:*

սում էր «գալստեան դքսին», այսինքն՝ Լյուսիասին: Վերջինս «եկն ի Կեսարիա և մտեալ ի Սեբաստիա՝ Նստաւ յատենի հանդերձ դաստաւորաւն»:

Քառասուն քրիստոնյա զինվորները 320 թ. ջրահեղձ են արվում Սեբաստիայի լճում[67]:

Քառասունհինգ սրբոց վկայաբանության համաձայն, դարձյալ Լիկինիոս կայսեր օրոք, դուքս Լյուսիասին էր ենթարկվում «ամբողջ հայկական լեգեոնը» (ὤπερ ἦν ἀποκεκληρωμένη ἡ λεγεὼν *πασα ἡ 'Αρμενια)*[68]: Այդ օրերում «ի գունդն սենտորաց» (սենատորական) ծառայում էր սուրբ Սևերինոսը, որ նշանակվել էր հենց դուքս Լյուսիասի կողմից: Սևերինոսին ամբաստանեցին, թե «արհամարհէ զհրամանս ինքնակալին», ինչպես և Լյուսիասի, կուռքերին զոհ չի մատուցում՝ «զինքենէ քրիստոնեայ դոլով»: Նրան նաև մեղադրանք ներկայացվեց, թե «մահու պատճառ եղև քառասուն սրբադոյն զինուորացն»[69]: Խոսքը Սեբաստիայի լճում ջրահեղձ արված զինվորներին է վերաբերում:

Վկայաբանությունում ասվում է, որ երբ սուրբ Սևերինոսին տանում էին բանտ, «երթայր ընդ նմա և ամենայն ամբոխ քաղաքին մինչև ցբանտն. զորս ողջունելով ի համբոյր սրբութեան զհաւատացեալսն ի Տէր, մտանէր ի ներքս ուրախութեամբ բազմաւ»: Լյուսիասը Սևերինոսին մահապատժի ենթարկելուց առաջ ասաց սրբին. «Սաստին ինձ վասն քո ամենեքեան, թէ ռամիկ այր ես դու առանց դպրութեան. այլ ես առն հռետորի և փիլիսոփայի քաջաբանութիւն տեսանեմ ի քեզ»[70]:

Լիկինիոս կայսեր օրոք նահատակվեց և սուրբ Վլասիոսը, որին «բնակիչք կապպադովկացւոց և որք ի Սեբաստիա քաղաքի (Սիմեոն Մետափրաստեսի տեքստում՝ οἱ ἐν τῇ πόλει Σεβαστεια τῆs Καππαδοκίας - «Կապադովկիայի Սեբաստիա քաղաքի բնակիչները»[71]) կամեցան դալ նմա ի պատիւ եպիսկոպոսութեան... և ժողովեալ եպիսկոպոսաց բազմաց և քահանայից և կղերիկոսաց՝ վերակոչեն զնա յաթոռ քահանայապետութեան Սեբաստիոյ քաղաքի...»: Հետաքրքրականն այն է, որ Սեբաստիայի քահանայապետ ձեռնադրելուն մասնակցում են և կապադովկացիք, որոնք, շատ հավանական է, հայեր էին: Նրան ոչնչացնելու հանձնարարությամբ Լիկինիոս կայսրը Սեբաստիա է ուղարկում «այր ժլիրհ և ապարասան, որում

---

67 Վարք և վկայաբանութիւնք սրբոց: Հատընտիր քաղեալք ի ճառընտրաց. Հ. Բ. Վենետիկ, 1874, էջ 506-513:

Կապադովկիայի - Փոքր Հայքի (Սեբաստիայի) հայոց (ամենայն հավանականությամբ՝ ֆեդերատների) ուշ հռոմեական, ապա և բյուզանդական բանակում ծառայելու փաստը արձանագրված է Կոստանդին Ծիրանածին կայսեր «Բյուզանդական արքունիքի Արարողությունների մասին» գրքում: Լևոն VI կայսեր օրոք՝ 902 թ. Սեբաստիա բանակաթեմից 1000 հայ զինվորներ իրենց հրամանատարներով մասնակցեցին Կրետե կղզուն տիրացած արաբների դեմ կազմակերպված արշավանքին: Հայտնի են անգամ նրանց ռոճկաչափերը: Տե՛ս Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 6: Բյուզանդական աղբյուրներ, գիրք Բ., Կոստանդին Ծիրանածին: Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի. Երևան, 1970, էջ 145-146:

68 J.-P. M i g n e. Նշվ. աշխ., հ. 115, սյունակ 324:

69 Վարք և վկայաբանութիւնք սրբոց: Հատընտիր քաղեալք ի ճառընտրաց. Հ. Բ, էջ 301:

70 Նույն տեղում, էջ 307.

71 "Αθλησιs τοῦ ἁγίου καὶ ἐνδόξου ἱερομάρτυροs Βλασίου ἐπισκόπου γενομενου Σεβαστειαs. J.-P. M i g n e. Նշվ. աշխ., հ. 116, սյունակ 817:

անուն էր Ագրիկողայոս: Լուեալ այնուհետև հաւատացելոց զհամբաւ դալստեան նորա, ղօղեալք թաքչէին»[72]:

Հիշյալ դեպքերը տեղի ունեցան Լիկինիոսի օրոք նախքան 313 թ., նախքան այդ կայսեր և Կոստանդին Մեծի հրապարակած այսպես կոչված Միլանի էդիկտը:

Փոքր Հայքի Նիկոպոլիս քաղաքում «ի մէջ լէգէոնին Հայոց» ծառայում էին քառասուներեք քրիստոնյա զինվոր-զինվորականներ, որոնք Լյուսիաս դքսի կողմից նահատակվեցին: Դքսի հարցին, թե «ուստի՞ էք դուք, և ո՞ ուսոյց ձեզ չպաշտել զդիսն վերինս, և չզոհել նոցա», նրանցից մեկը՝ Ղևոնդիոսը, բոլորի անունից պատասխանեց. «ոմանք ի մէնջ քաղաքէ աստի (Նիկոպոլսից Հ.Բ.) եմք, և այլք ի մերձակայ սահմանաց քաղաքիս» (էջ 107), ասել է բոլորն էլ հայեր էին: Բանտում ծարավից տառապող մահապարտներին, որոնք «ի մանկութենէ» քրիստոնյաներ էին (էջ 116), թաքուն ջուր էր բերում Բասիանէ անունով մի քրիստոնյա կին, որը, վախենալով բանտի դռանը կանգնած զինվորներից, չէր համարձակվում խոսել բանտարկյալների հետ: «Յայնժամ սուրբն Ղևոնդիոս խօսեցաւ առ Բասիանէ հայերէն լեզուաւ[73] առ չիմանալոյ բանտապանացն»:

Քրիստոնյա և «իշխան մի էր ի Նիկոպօլիս իբրև քաղաքապետ Հերովդէս անուն՝ քրիստոնեայ, այլ կեղծաւորեալ ղհեթանոսութիւն» (էջ 121): Ասել է բարձրաստիճան պաշտոնեությունը քողարկված քրիստոնյաներ էին: Այդ քառասուներեք մահապարտներին միանում են և նոր կրոնը դավանած երկու եգիպտացի պահակները, որով սրբերը դառնում են քառասունհինգ հոգի: Բոլորին մահապատժի ենթարկեցին, աճյունները նետեցին Գայլ գետը (էջ 127)՝ Նիկոպոլիս քաղաքից վեց մղոն հեռավորության վրա և «ոչ կարի հեռի ի Սեբաստիոյ» (էջ 131)[74]:

### 5. Փոքր Հայքի և Կապադովկիայի քաղաքական կարգավիճակը նախքան քրիստոնյաների հալածանքները

Արդ, ինչպիսի եզրակացությունների կարելի է հանգել վերոգրյալի հիման վրա: Նախ և առաջ Փոքր Հայք և Կապադովկիա նահանգների քաղաքական կարգավիճակի հարցում: Մինչև Ագրիկոլայոսի և Լյուսիասի տեղ ժամանելը և հիշյալ նահանգները կառավարելը, այդ պաշտոնը վարում էին տեղացիք (յազգէ բնիկ), ասել է հայեր և կապադովկացիներ: Բացի այդ, վերոհիշյալ և ոչ մի վկայաբանության մեջ այդ նահանգների Հռոմին հարկատու լինելու մասին խոսք չկա: Եթե լիներ, ապա վկայաբանության հեղինակը ամենամռայլ գույներով կնչեր այդ փաստը: Ասել է նահանգները վայելում էին «ազգային ինքնավարություն», պատկանում էին Հռոմեական կայսրությունում ընդունված φίλος καὶ σύμμαχος – բարեկամ և

72 Վարք և վկայաբանութիւնք սրբոց: Հատրնտիր քաղեալք ի ճառընտրաց. հ. Բ, էջ 382 և հտ.:

73 Գրիգոր Լուսավորչին ձեռնադրող կապադովկացի եպիսկոպոսը նույնպես Ղևոնդիոս էր կոչվում:

74 Վկայաբանութիւն սրբոց քառասուն և հինգ վկայիցն, որ ի Նիկոպօլիս Փոքուն Հայոց: Լիակատար վարք և վկայաբանութիւն սրբոց..., հ. Դ, Վենետիկ, 1813: Առանձին ձեռագրերի վերնագրում գրված է «ԽԵ մարտիրոսաց որ ի Նիկոպօլիս Հայոց» (Նույն տեղում, էջ 132):

*դաշնակից կատեգորիային: Դիոկլետիանոսը իր ձեռնարկած «բարենորոգումներով» նպատակ էր հետապնդում վերացնել այդ ինքնուրույնությունը: Առաջին քայլը եղավ ընիկ նահանգապետերին ազատելն ու նրանց փոխարեն սեփական կադրեր նշանակելը: Այդ քաղաքականությունը հետագայում վարվում էր հայկական և այլ կիսանկախ նահանգների նկատմամբ: Փոքր Հայքի և Կապադովկիայի դեպքում պայքարը գնաց քրիստոնեության դեմ մղվող պայքարի քողի տակ: Այս առթիվ միանգամայն տեղին է զուգահեռ անցկացնել Փոքր Հայքի և Բյուզանդական կայսրության սահմաններում գտնվող և ներքին ինքնավարություն վայելող Հայաստանի 387 թ. բաժանմամբ Բյուզանդիային անցած Մեծ Հայքի հարավ-արևմտյան շրջանների՝ սատրապություն-նախարարությունների, այն է Անձիտի, Անգեղտան, Հաշտյանքի, Ծոփքի, Շահունյաց Ծոփքի, Բաղնատան նախարարությունների*[75]*, ինչպես և Ներքնագույն Հայքի (*Αρμενία ἡ ἐνδοτάτη – Armenia Interior*) միջև: Սատրապ-նախարարների իշխանությունը ժառանգական էր և ցմահ: Նրանք հռոմայեցիների կայսրից ստանում էին միմիայն նշանակներ*[76]*: Ինչպես գրում է Ն. Ադոնցը, «վերոհիշյալ շրջանները իրավական տեսակետից կարելի է դասել կայսերական օրգանիզմի բաղկացուցիչ միավորներին, որոնք դեռ հնում կոչվում էին դաշնակցային՝* foederatae *և ազատ -* liberae*: Նրանք համարվում էին իրենց տարածքի լիակատար տերերը, հարկատու չէին, չունեին հռոմեական կառավարիչ և իրենց մոտ չէին պահում հռոմեական կայազոր: Նրանց կայսրության հետ կապող հիմնական պարտականությունն էր զինական ուժեր հատկացնելը և ընդհանրապես զինական օգնություն ցուցաբերելը... Լինում էին* ἔνσπενδοι, συμμαχικοί *(դաշնակից) ժողովուրդներ և ի հակադրություն սրանց* ὑπήκοοι, ἀρχόμενοι *(հպատակ»)*[77]*: Քանի որ այստեղ արդեն կրոնական հարց գոյություն չուներ (Բյուզանդիան վաղուց քրիստոնյա տերություն էր), ապա առիթ հանդիսացավ Իլլոսի և Լեոնտիոսի կողմից Զենոն կայսեր դեմ 484 թ. բարձրացրած ապստամբությանը սատրապների մասնակցությանը: Զենոնը «մի թույլ և աննշան իշխանություն ունեցող սատրապի Բալաբիտենե (իմա՝ Բալահովիտ – Հ. Բ.) կոչված երկրում թողեց նախկինի պես իշխել միայն, իսկ մնացած բոլորին, զրկելով իշխանությունից, չտվեց այն նրանց ցեղակիցներին (ինչպես Դիոկլետիանոսը Փոքր Հայքի և Կապադովկիայի դեպքում – Հ. Բ.), այլ, ինչպես հռոմեական բոլոր մյուս իշխանություններում էր, դարձրեց ոչ ժառանգական՝ ըստ կայսեր ցանկության... Հուստինիանոս կայսրը... վերջ տվեց սատրապների իշխանությանը և այդ ցեղերի (բնագրում՝* ἔθνη*, ինչպես վկայաբանության մեջ Փոքր Հայքի և Կապադովկիայի բնակչությունն է կոչված – Հ. Բ.)*

---

75 *Հմմտ. «զմեծամեծ նախարարսն սատրապսն Հայոց». Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց. Թիֆլիս, 1912, էջ 113:*

76 *Պրոկոպիոս Կեսարացին նկարագրում է սատրապների նշանակները. «դա բրդյա քղամիդ էր,... քղամիդի վրա ամրացված էր լինում ոսկե ճարմանդ՝ մեջտեղում թանկագին քար... քղամիդից բացի կար նաև մետաքսյա պատմուճան» (տե՛ս Օտար աղբյուրները Հայաստանի և Հայերի մասին 5, Բյուզանդական աղբյուրներ, գիրք Ա, Պ ր ո կ ո պ ի ո ս Կ ե ս ա ր ա ց ի: Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1967, էջ 190-191: Եվստրատիոսի նշանակներն էին քղամիդ, իշխանական պատմուճան և պատվական գոտի: XI դարի արճճե կնիքների վրա պատկերված սբ. Եվստրատիոսի քղամիդի վրայի ճարմանդը:*

77 *Ն. Ա դ ո ն ց. Նշվ. աշխ., էջ 122–123:*

վրա նշանակեց երկու, այսպես կոչված դուքսեր»[78]: Հայկական զորքը նա լուծարեց և դուքսերին տվեց «հռոմեական մեծաքանակ զորք»[79]: Հետագայում քաղկեդոնիկ կայսրության նմանօրինակ պայքարը «ազգություններ» (ἔθνη) դեմ ընթացավ միաբնակության դեմ պայքարի քողի տակ:

Նույն պատկերն է ներկայացնում և բյուզանդական Ներքնագույն Հայքը – Ἀρμενία ἐνδοτάτη – Armenia Interior, որ 387 թ. բաժանմամբ անցել էր կայսրության ձեռքը: Բյուզանդական բանակում ծառայող նշանավոր զորավարներ Հովհաննես Արշակունին ու նրա փեսա Վասակը, երբ պարզ դարձավ, որ հռոմայեցիների հետ համաձայնության գալու հույսերը ի դերև անցան, գնացին պարսից արքա Խոսրովի մոտ և ասացին նրան. «Մեր նախնիների վերջին արքա Արշակը կամավոր կերպով իր իշխանությունից հրաժարվեց հօգուտ հռոմայեցիների կայսր Թեոդոսի այն պայմանով, որ իր բոլոր տոհմակիցները (ասել է՝ հայերը – Հ. Բ.) հավիտյան պիտի անկախ ապրեն և ոչ մի դեպքում հարկատու չդառնան...: Մենք կարողացանք պաշտպանել սահմանվածը այնքան ժամանակ, մինչև որ դուք կնքեցիք այս չարաբաստիկ հաշտությունը»[80]: Խոսքը վերաբերում է Հուստինիանոս Ա-ի և պարսից արքա Խոսրովի 532 թ. կնքված «հավիտենական» կոչված հաշտությանը: Շարունակելով, նրանք ասացին Խոսրովին: «Նա (իմա՛ Հուստինիանոսը – Հ. Բ.) չէ՞, որ մեր վրա սահմանեց հարկերի աննախընթաց գումար»:

### 6. Քրիստոնեության ընույթը Փոքր Հայքում և Կապադովկիայում

Փոքր Հայքում, Կապադովկիայում (և Կիլիկիայում), ասել է՝ Հռոմեական կայսրության այս «ազգային ինքնավարություններում», քրիստոնեությունը տարածված էր սոցիալական բոլոր խավերի շրջանում: Մարդարիոսը «ռամիկ» էր (ἰδιώτης τὴν τύχην), Ավքսենտիոսը սովորական «եռեց», բայց Եվստրատիոսը «իշխան», անշարժ և շարժական հսկայական գույքի, ստրուկների տեր, Եվգենիոսը «մին ի զօրականացն», որ «իշխանական պատուով ի նորուն (Եվստրատիոսի) դասուցն գոլով» (էջ 446-447), Ովրեստեսը «քաջ պինուոր» (էջ 454-455): Քրիստոնյա էր Արավրակայի քաղաքապետը (Մուկատոր) (πρωτεύων ἐν αὐτῇ), «այր երևելի» և «մեծատուն» (ἄνδρα ἐπίσημον καὶ πλούσιον πάνυ - սյունակ 481 - «այր երևելի և անչափ հարուստ»): Քրիստոնեությունը լայնորեն տարածված էր բանակում: Փոքր Հայքի Նիկոպոլիս քաղաքում տեղակայված հայկական լեգեոնի «բազումք ի զօրականացն յայնմ գնդէ՝ որ ի քաղաքին էին մատեան առ իշխանն Լիւսիաս մեծաւ համարձակութեամբ, աղաղակեցին միով բերանով և ասեն. Ո՛վ Լիւսիաս, և մեք քրիստոնեայք եմք»: Զինվորականներ էին

78 Հռոմեական կառավարիչների թվաքանակն էլ է համընկնում: Դիոկլետիանոսը նշանակել էր Ագրիկոլայոսին և Լյուսիասին:

79 Պրոկոպիոս Կեսարացի, էջ 191: Սատրապությունների մասին տե՛ս Ն. Ադոնցի հիշյալ աշխատության մեջ և հատուկ Կ. Գյուտերբոկ. Հռովմեական Հայաստան և հռովմեական սատրապությունները Դ–Զ դարերուն. Գերմաներենե թարգմանեց Հ. Մկրտիչ վ. Նորշուան. Վիեննա, 1914:

80 Հմմտ. և Մովսես Խորենացու Պատմության մեջ: Արշակ III թագավորի մահից հետո «ոչ ևս կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր... և աշխարհին իւրեանց մասինն կացուցին Յոյնք կոմէսս իշխանս» (էջ 316):

*Սեբաստիայի քառասուն վկաները, սենատորական գնդում ծառայող սուրբ Սևերիանոսը: Քաղաքների բնակչությունը մեծ մասամբ քրիստոնյաներ էին, որոնցից սարսափում էր անգամ դուքս Լյուսիասը: Բարձրաստիճան քաղաքացիները նախընտրում էին նոր կրոնը թաքուն դավանել: Նիկոպոլսի քրիստոնյա քաղաքապետը ձևացնում էր, թե հեթանոս է («կեղծաւորեալ զհեթանոսութիւն»):*

*Քրիստոնեությունը հունա-հռոմեական շրջաններում սկզբում տարածված էր հրեական համայնքներում (հիշենք Պողոս առաքյալի հասցեատերերին), ապա մասնակից դարձան և բնիկները (Աթենքում մեկ հոգի՝ Դիոնիսիոս Արեոպագացին), ապա շատ շատերը: Բայց շարժումն այստեղ տարածքային (ազգային) ծավալ չստացավ: Իսկ Փոքր Հայքում և Կապադովկիայում (հնարավոր է նաև Կիլիկիայում), այսինքն «ազգային ինքնավարություններում», այն «համազգային» ծավալ ստացավ: Եթե այս շրջանները չգտնվեին Հռոմի տիրապետության ներքո, հնարավոր է քրիստոնեությունն այստեղ պաշտոնական կրոն հռչակվեր 301 թ. էլ առաջ:*

*Ասվածից կարելի է եզրակացնել, որ քրիստոնեությունն այստեղ սոցիալական բնույթ չէր կրում, հասարակության վերին և ստորին խավերի միջև գնացող պայքար չէր, այլ քրիստոնեական գաղափարներով քողարկված ազգային ինքնության պահպանմանն ուղղված շարժում:Եվ ոչ միայն: Եթե նկատի ունենանք վկայաբանության մեջ նշված այն կարևոր փաստը, թե «ամենայն աշխարհն Հայաստանեաց և Կապպադովկիա ընդդիմամարտ եղեն թագաւորական հրամանին (իբրև թե աստվածներին զոհ մատուցելու մասին — Հ. Բ.) և միաբանութեամբ յապստամբութիւն իմն թեւակոխեն», և դա «լուեալ Դիոկղիտիանոս խռովեցաւ ի սրտի իւրում», իսկ այն պատճառով, որ բնիկ կառավարիչները չեն էլ փորձում դրա առաջն առնել, դրա համար էլ պաշտոնանկ են արվում և նրանց փոխարեն օտարներ են նշանակվում, վկայությունն է այն մասին, որ այս երկու նահանգներում Հռոմի լուծը թոթափելուն ուղղված անջատողական (սեպարատիստական) տրամադրություններն շատ ուժեղ էին: Եվ պատահական չէ, որ քրիստոնյաների հալածանքները Հռոմեական կայսրության տարածքում առավել դաժան բնույթ ստացան հենց «ազգային ինքնավարություններում», այն նահանգներում, որոնք գտնվում էին Դիոկլետիանոսի և Գայիոս Գալերիոս Վալերիոս Մաքսիմիանոսի իրավասության ներքո:*

### *7. Քրիտոնեական կրոնի գաղափարաբանական հիմնավորումը Փոքր Հայքում և Կապադովկիայում*

*Մինչև այստեղ խոսքն ընթացավ նոր կրոնի Փոքր Հայքում (և Կապադովկիայում) տարածվելու քաղաքական շարժառիթների շուրջ: Սակայն սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանությունը հնարավորություն է ընձեռում նաև ցույց տալու, թե երկրամասի քրիստոնյա մտավորականությունը գաղափարաբանական ինչ միջոցներով էր հիմնավորում նոր կրոնի ճշմարիտ լինելը: Քրիստոնեական ապոլոգետիկան (ջատագովությունը) այս շրջանում ընթացավ նեոպլատոնական փիլիսոփայության ուղղությամբ:*

Հին Հայաստանի փիլիսոփայության պատմության անվանի հետազոտող ակադ. Սեն Արևշատյանը իր «Փիլիսոփայական գիտության ձևավորումը Հին Հայաստանում (V-VI դդ.)» աշխատության մեջ հատուկ նշում է. «Նեոպլատոնականությունը, որպես այն ժամանակ (խոսքը վերաբերում է V դարի 60-80-ական թվականներին — Հ. Բ.) առավել տարածված փիլիսոփայական ուղղություններից մեկը, սկսեց իր համար ճանապարհ հարթել նաև հայ իրականության մեջ: Եղիշեն առաջին հայ մտածողն էր, որի հայացքներում իրենց արտահայտությունը գտան նեոպլատոնական կոնցեպցիաները, թեկուզև ենթարկված քրիստոնեական-բարոյագիտության պրոբլեմատիկային: Եղիշեի հայացքների բնորոշման համար հենց այս վերջին պարագան դարձավ որոշիչ, չնայած նեոպլատոնականության ծիլարձակմանը որպես ամբողջությամբ քրիստոնեական ապոլոգետիկայի ուղղությանը վերաբերող»[81]:

Ս.Արևշատյանը միանգամայն արդարացի է, երբ, նկատի ունենալով հայոց գրերի գյուտից անմիջապես հետո ստեղծված մի շարք ինքնուրույն հայերեն ստեղծագործություններ[82], ցույց է տալիս, որ «Հայ գրականության և փիլիսոփայական մտքի այս առաջին հուշարձանների ուսումնասիրության ժամանակ, չպետք է անուշադրության մատնել այն հանգամանքը, որ քրիստոնեությունը պետական կրոն հռչակելուց շատ առաջ հայերը անգիր ժողովուրդ չէին: Այս շրջանում և ավելի ուշ, մինչև V դարի սկիզբը, նրանք օգտվում էին հունարեն, պարսկերեն, ասորերեն լեզուներից և գրերից պետության կրոնի և հոգևոր մշակույթի կարիքների համար»[83]: Նրա այս միտքը հունարեն լեզվի առնչությամբ, ահա փայլուն կերպով գալիս է հաստատելու (ամենայն հավանականությամբ հայի կողմից գրված) սրբոց Եվստրատիոսյանց վկայաբանությունը նախ և առաջ նեոպլատոնականության հարցում:

Սրբի դատաքննության ընթացքում տեղի ունեցած Եվստրատիոս—Ագրիկոլայոս բանավեճը մանրամասն արձանագրվել է: Այդ մասին հստակ ցուցմունքի ենք հանդիպում հենց սրբի վկայաբանության մեջ: Այնտեղ, ինչպես ցույց տրվեց վերջինիս բովանդակության շարադրանքում, Լյուսիաս դուքսը հաստատված կարգի համաձայն Սատաղ քաղաքում ձերբակալվածներին ուղարկում է Սեբաստիա Ագրիկոլայոս հեգեմոն-դատավորի կողմից դատաքննության ենթարկվելու: Ագրիկոլայոսը նույն կարգի համաձայն Սեբաստիայում ձերբակալվածներին Սատաղ էր ուղարկում՝ Լյուսիասի մոտ: Նպատակը ո՞րն է, ասված է վկայաբանության բովանդակության շարադրանքում: Այսպես ուրեմն, Լյուսիասը Եվսարատիոսին (և զինվորական Օրեստեսին) ուղարկում է Ագրիկոլայոսի մոտ: Նրանք Նիկոպոլ-

81 С. С. Аревшатян. Формирование философской науки в Древней Армении (V—VI вв.). Ереван, 1973, с. 119—120.

82 Նույն տեղում, էջ 43:

83 Նույն տեղում, էջ 53: Տասնամյակներ անց Արշակ II-ի և Պապի օրոք ապստամբ Մերուժան Արծրունու կարգադրությամբ, թեև «այրեալ լինէին ընդհանուր աշխարհիս յոյն գիրք» (Խորենացի, էջ 329), և որ նա «հրաման տայր մի ուսանել դպրութիւն յունարէն, այլ պարսիկն. և մի ոք իշխեսցէ յոյն խօսել կամ թարգմանել, այսպիսի ինչ պատճառաւ, զի ամենևին մի լիցի Հայոց ընդ Յունաց ծանօթութիւն և հաղորդութիւն սիրոյ, այլ ճշմարիտ խափանել զքրիստոնէութեան ուսումն, զի յայնժամ գիր դպրութեան Հայոց չև ևս էր լեալ, և յունականաւն վարէին եկեղեցւոյ կարգք» (Խորենացի, էջ 301), բայց նա իր նպատակին չհասավ:

սի վրայով հասնում են Սեբաստիա և հանձնվում դատավորին: Մեղադրյալների հետ միասին ուղարկվում են Ագրիկոլոյոսին հասցեագրված Լյուսիասի նամակները (ἐπιστολαὶ) և Եվստրատիոսի «քննության գրավոր արձանագրությունը» (ἔγγραφος ἐξέτασις – սյունակ 489): Դրանք Ագրիկոլայոսի հրամանով դատաքննության սկզբում ընթերցվում են: Նշենք, որ հայերեն թարգմանության մեջ ἐπιστολαὶ-ն (նամակները) թարգմանված է «հրովարտակ»[84], իսկ արձանագրությունը չի հիշված: Մունետիկը բարձրաձայն «աղաղակէր ի լուր ամենեցուն հրամանաւ դատաւորին և ասէր. Գրաւորական նամակքն որ առաքեցան ի Պարհացւոց[85] դքսէն Լիւսիասայ, ընթերցցի ի լուր ատենիս. և յայտնի լիցի ի նմանէ մակադրեալ ամբաստանութիւնքն՝ որ ինչ վասն Եւստռատիոսի էին» (էջ 460):

Նշենք, որ վկայաբանության հայերեն թարգմանության 1874 թ. հրատարակության առաջաբանի անանուն հեղինակը միանդամայն ճիշտ ցույց է տվել, որ «Անդ ի խռան բազմութեան հանդիսատեսացն՝ դոյին և վկայադիրք նօտարք առ ի յեկեղեցւոյ կարգեալք, որոց գործ էր հաւատարիմ զգուշութեամբ տալ ի քարտի զոր լսէինն և տեսանէին, զբանս և հրապոյրս դատաւորաց, և զսրբոցն առ նոսա պատասխանիս, զազգս ազգս տանջանաց և զմահ վկայութեան, զորս յունկն հաւատացելոց ընթերցեալ ամփոփէին ապա ի դիւանս եկեղեցւոյ: Այս սկիզբն եղև Մարտիրոդոք (վկայաբանություն – Հ. Բ.) կոչեցեալ գրոց կամ վկայաբանութեանց»:

Այս կամ այն սրբի վկայաբանության կազմողը կարող էր իր մոտ նշել տեսածն ու լսածը, բայց նա չէր կարող ձեռքի տակ ունենալ հարցաքննության սղագրությունը: Դա ձեռք բերվեց մի երկու տասնամյակ անց, երբ քրիստոնեությունը դադարեց արգելյալ և հետապնդվող կրոն համարվելուց:

Սուրբ Եվստրատիոսի և նրան գաաող Ագրիկոլայոս հեգեմոնի միջև ընթացած բանավեճը ցույց է տալիս, որ վկան չարքային մի անձնավորություն չէր: Նախ և առաջ նա քաջածանոթ էր հռոմեական օրենսգրությանը: Նա անգամ մեջբերումներ է կատարում Կեսարի դատաստանագրքից: «Ո՛վ դատաւոր,- դիմում է նա Ագրիկոլայոսին,- քանզի պարունակեալ լինի յօրէնս (νόμῳ) Սեբաստիոսի կայսեր[86] այսպէս. բռնութիւն, ասէ, ի բաց լիցի յամենայն իրէ, և ի գործոց և ի բանից. բայց հաւանութիւն յամենայնի քաղաքավարեալ լիցի. քանզի պարտ է այնմ որ իշխանութեամբ լինիցի զհրամայեալսն գործել, կամ հաւանեցուցանել կամ հաւանել: Եւ դարձեալ պարունակէ յետոյ փոքր ինչ նուագիս այսմիկ տանց, և ասէ այսպէս. Այլ իշխանին, ասէ, հրամայեմք զերկիւղն ընդ հեզութիւն խառնել ի դատելն

84 «Հրովարտակ» (եզակի) է թարգմանված ἐπιστολαὶ-ն (հոգնակի):

85 Անհասկանալի «Պարհացւոց»-ի փոխարեն հունարեն բնագրում "παρά τοῦ περιβλέπτου" է՝ «նշանավոր, փառավորյալ»: Մ. Ավգերյանը նկատել է թյուրիմացությունը և հենվելով Սուրիոսի լատիներեն թարգմանության վրա, գրել. «Ըստ Սուրիոսի՝ ի պայծառ»: Այսինքն ըստ էության Սուրիոսը Սիմեոն Մետափրաստեսի բառի թարգմանությունն է տվել:

86 Ճիշտը՝ Սեբաստոս Կեսարի (Σεβαστου Καισαρος): Նույն սխալը՝ Կեսար տոհմանունը ընդունել որպես αὐτοκράτωρ - imperator հանդիպում է Նոր Կտակարանի հայերեն թարգմանության մեջ ամենուրեք: Հմմտ. Մատթ. 22.17, 22.21, Մարկոս 12.14, 12.16, 12.17. Ղուկաս 2.1, 3.1, 20.22, 20.24, 20.25, 23.2, Հովհաննես 19.12, 19.15, Գործք Առաք. 11.28, 17.7, 25.8, 25.10, 25.11, 25.12, 25.21, 26.32, 27.24, 28.19, Փիլ. 4.22:

իւրում, որպէսզի մի՛ ոմանց վասն երկիւղին առ թշնամութիւն առնել, և ոչ վասն հեզութեանն՝ հեղգութիւն առ ոմանս ի կիր արկանել: Զայսոսիկ զոր ասացի իսկ, ո՛վ դատաւոր, գրեա՞լ է (γέγραπται) այսպէս եթէ ոչ: Ագրիկոդայոս ասաց. Այո՛» (էջ 461): Եվստրատիոսը Ագրիկոլայոսից պահանջում է, որ այդ սկզբունքը կիրառվի և իր դեպքում (սյունակ 489):

Եվստրատիոսը քաջատեղյակ էր նաև հին հունական գրականությանը, անտարակույս նաև քրիստոնեական կրոնի հիմնական գրքերին՝ Հին և Նոր Կտակարաններին: Նշենք այստեղ, որ Եվստրատիոսը տվյալ պահին արդեն ծառայել էր հռոմեական բանակում ամբողջ քսանյոթ տարի, ասել է, եթե նա ծառայության է ընդունվել քսան տարեկան հասակում, ապա տվյալ պահին նա շուրջ հիսուն տարեկան էր, այդ ժամանակների համար պատկառելի տարիքում: Բայց դա ամբողջը չէ: Երբ Ագրիկոլայոսը և նրա գործակից Լյուսիասը, վկայաբանության հայերեն թարգմանության ասելով «եկեալ էին ի Հելլենացւոց գաւառէն, յոյժ իմաստունք և վարժք և կիրթք ամենայն հռետորական և փիլիսոփայական հանճարով, և խռհեմք խորագիտութեամբ քան զամենայն սինկղիտոսացն» (էջ 436), բազմաստվածությունը պաշտպանելու համար Ագրիկոլայոսը հիշում է Պլատոնին, Արիստոտելին, Հերմես (Եռամեծին) և Հին Հունաստանի այլ հեղինակությունների, ապա Եվստրատիոսը պատասխանում է. «Ոչ եմ անտեղեակ միում ումեքս ի նոցանէ, այլ ամենեցուն հմտացեալ եմ ի մանկութենէ իմմէ (հունարենում ἐκ νεαρᾶς ἡλικίας - «երիտասարդ հասակից», սյունակ 492). ուսեալ եմ և զերաժշտականն ամենայն, հմուտ եմ ասաեղաբաշխութեան արհեստիցն, և ոչ հեռի յերկրաչափական գծիցն և վարժումն թուականութեան օրէն իսկ է մեր[87]. առաքինասէր հօր հանդիպեալ եմ մակացու գոլով նրա արհեստագիտ մասանց և գիտութեանց. և եթէ կամեսցիս սկսցուք նախ ի Պղատոնէ»[88]:

Պատահական չէ, որ Եվստրատիոսը նախաձեռնում է միաստվածության պաշտպանության համար սկսել Պլատոնից, հավանաբար՝ նրա Տիմեոսի «տրամաբանությունից»: Սրան ի պատասխան Ագրիկոլայոսն ասում է. «Գիտեմք զՊղատոն առ Տիմէի[89] մատենին տրամաբանութեան»: Ագրիկո-

---

87 Հմմտ. Մ ո վ ս է ս Խ ո ր ե ն ա ց ի. Պատմութիւն Հայոց, էջ 8–9. «Բազում արք անուանիք ե իմաստութեան պարապեալք ի Յունաց աշխարհէն՝ հոգացան ոչ միայն զգիրս դիւանացն այլոց ազգաց թագաւորացն ե զմեհենիցն յեղուլ ի յոյն բան... ե ուրեք ուրեք գտեալ աշխատութեամբ, հաւաքեալ փոխեցին ի յոյն լեզու, որպէս զԱ(ստեղաբաշխութիւն) առ Ք(աղդեացիս), և զԹ(ուականութիւն) առ Փ(իւնիկեցիս) և զԵ(րկրաչափութիւն) առ Ե(գիպտացիս)»:

88 Սույն պարբերության չղագիր բերված նախադասությունը Սիմեոն Մետափրաստեսի բնագրում բացակայում է:

89 Ավելորդ չէ հիշեցնել, որ Գրիգոր Մագիստրոսը Սարգիս վարդապետին գրած նամակում ասում է. «ոչ ենք երբէք գագարեալ ի թարգմանութենէ ես. բազում մատեանս, զորս ոչ ենք գտեալ ի մեր լեզուս զերկուս մատեանսն Պղատոնի, զՏիմէոսի տրամաբանութեան ե զՓեդովնի յորս բոլոր ճառսն նախագիտականին այն պարփակեալ կա» (Գրիգոր Մագիստրոսի Թղթերը. Բնագիրն յառաջաբանով և ծանօթութիւններով առաջին անգամ ի լոյս ընծայեց Կ. Կոստանեանց, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 66: «Առ Իբրահիմ ամիրայն վասն հաւատոց» գրած մանրամասն և հանգամանալից թղթում նա հանդես է գալիս այն դերում, ինչ Եվստրատիոսը՝ հեթանոս Ագրիկոլայոսի: Նա Իբրահիմ ամիրային գրում է. «Այժմ կամէի կարճառօտ հատանել, սակայն հարկաւորեցայ ի դիմի խնդրոյս քո երկարագոյնս գրել. քանզի գրեցեր առ իս երկարագոյն գրել առ քեզ, և պղատոնականս ե այն անյամր և փութանակի և առանց հակառակութեան» (էջ 173):Գրիգոր Մագիստրոսը շարադրում է Պլատոնի գաղափարները ըստ վերոհիշյալ երկի. «այլ ի Տիմիոսի տրամաբանութեանն այսպէս և ըստ այսմ օրինակի ասէ. յետ առնելոյ արարչին զերկին ե զերկիր

լայոսը ընդգծում է Պլատոնի ասածն այն մասին, որ փիլիսոփան դնացել է Պիրեևս հեթանոսաց աստծուն աղոթելու (հունարեն բնագրում աստվածությունը իգական հոգով է նշված՝ τη θεω): Սրան Եվստրատիոսը պատասխանում է. «Յոյժ բամբասէ Պղատոն զաստուածն քո Արամազդ» (հունարեն բնագրում՝ Զևս - էջ 462): Եվ սուրբն այստեղ հենց Պլատոնի, ապա նաև հին հունական հեղինակությունների (Հոմերոս, Հեսիոդոս) երկերի հիման վրա ցույց է տալիս հեթանոսների գլխավոր աստվածության, նրանց կողմից «աստվածների և մարդկանց հայր» համարված Զևսի ոճրագործ և բարոյազուրկ լինելը: Զևսը հայրասպան է (նա սպանել է իր հորը՝ Կրոնոսին), մահկանացու կնոջ հետ հարաբերվելու համար ստացել կարապի կերպարանք (ավելացնենք, որ Եվրոպա անունով կույսին առևանգելու համար ստացել էր և ցլի կերպարանք: Զևսը նաև միասեռական է, մահկանացու պատանի Գանիմեդեսի հետ հարաբերվելու համար առևանգել է նրան, ստանալով արծվի կերպարանք), ուստի ինչպե՞ս կարելի է աստված համարել այդպիսի մեկին: «Վասն որոյ,— ասում է Եվստրատիոսը,— յիրաւի Պղատոն մախացեալ ընդ նմա թշնամանէ զաստուածն քո Զևս» (էջ 462-463): Եվ դա դեռ բոլորը չէ: Զևսը ողբում է Տրոյական պատերազմում զոհված իր որդի Սարպեդոնին: Ինչպե՞ս կարող է գլխավոր աստվածությունը թույլ տա, որ մահկանացու կնոջից ունեցած իր որդին սպանվի և ինքը ողբա, այն էլ «կանացի մոլեգնությամբ հափշտակված»:

Հայերեն բնագրում կա ընդարձակ մի նախադասություն, որից լոկ փոքր հատվածներ կան Սիմեոն Մետափրաստեսի տեքստում: «Ապա եթէ ինքն Պղատոն,— ասում է Եվստրատիոսը Ագրիկոլայոսին,— չարադրող իմաստութեանն ձեր հրաժարեաց գոլ ընդ այնմ, որ զերկնի և զերկրի հանդամանս որպիսութեանն քննեաց, և ի ծայրս բոլորակցութեան աբհեստիցն հասեալ եղև, ամենայն հիդութեան առիթ զսա գոլ, ասէ, և դրսովանս յամենեցունց առ սա ձգեալ վատթարագոյն խեննչութեամբ ի մէջ կացուցանէ, զսորին բղջախոհական անիրաւութիւնսն, անդնդային չարահոտ գառնութեանն, անյագ վաւաշոտութեանն յապականութիւն ջրհեղեղեալ, զոր հրամայեն ոչ միում ումեք ի մարդկանէ որ առաքինութեան փոյթ ունիցի նմանող լինի ախտից նորա այլ մանաւանդ մեռելութիւն բացագործել ախտից, և նմանել Աստուծոյ, ըստ կարողութեան մարդկան և զիա՞րդ կամ որպէ՞ս զոր նոքա ըմբռնեալ եղեն գործովք և անհանճար մտօք, ստորանկեալ լինիք և դուք յայնոսիկ, և զմեզ հարկէք այսօր ստայօդ ոչէիցն և ապականադործ մանկամոլին և դիւանուէր անշունչ պատկերացն երկիր պագանել» (էջ 463): Ընդգծվածը Սիմեոն Մետափրաստեսի մոտ չկա: Նա կրճատել է նաև հայերեն թարգմանության մեջ առկա 464-րդ էջի վերջին տասը տողը և ամբողջ 465-րդ էջը:

Հայերեն թարգմանության մեջ այնուհետև մեջբերվում են Հերմես (Եռամեծի), Եվրիպիդեսի, Հռուփոսի, Արիստոտելի (որ «ըստ պղատոնականին հետևիւր բանից») ասույթները, հերթականությամբ քննադատության են ենթարկվում հունական պանթեոնի արական սեռի աստվածները՝ սկսյալ

---

հրատարակէր առ. իմանալի զօրութիւնս, եթէ երկին անկատար, երկին կոչէ զաշխարհ ի պարունակէն, և եթէ այլևս երեք սեռք մեզ անեղանելիք, որոյ ոչ եղելոյ երկին անկատար, յորոց և մարդս» (էջ 179):

Արամազդից *(Զևս), որին «հայր աստուածոց ասէք լինել, զայն որ սպանութիւն և զապականութիւն և զդիւահար այլակերպութիւն և զախտս ամենայն գիջութեան չարեաց զկնի իւր թողեալ յիշատակ»,* Պոսիդոնին, *«զոր ասէք արարիչ ջրոյ և գոյացուցիչ ծովու, և զդիւաբնակն զԱպողովն՝ կոչէք հաւասար և հանգունակից արեգական և ոչ ամաչէք»,* Դիոնիսոսին, *«զոր մայր արբեցութեան անուանէք զնա և երկրպագէք նմա՝ նիւթ ախտի ցանկութեան», և* Հեփեստոսին *«պարգևիչ հրոյ ասէք»: Եվստրատիոսը գտնում է, որ Աստված միայն բարին է գործում, նա ոչ մի չար բան չի գործել և չի գործում:*

*Արան հաջորդում է ընդարձակ մի հատված, որ Սիմեոն Մետափրաստեսի բնագրում բացակայում է, հավանաբար նրա կողմից կրճատված: Եվստրատիոսը խոսում է Աստծո «անհասանելի, անքննելի, անսահման, անայլայլելի, անպարտելի, անապական» լինելու մասին, որ գոյություն չունեն «աստուածք մեծագոյնք և նուաղք», քանզի Աստված է «անբաղգատելի զօրութեամբ միացեալ, և զմիակամ զաստուածութիւնք ունելով», որ «մեծ և հրաշալին Պղատովնիոս՝ տրամագրէ յիւրում տրամարանական մատենին և ասէ այսպէս. եթէ՝ Գերակատար գութս, արարչական զօրութիւնն և զընաւս տածէ մակաւասար բնութիւնն, և վերոյ կալով ամենայնին խնամէ, և զամենայն տեսանէ, և ինքն յումեքէ ոչ տեսանի, այլ անցեալ կա սարաւանդեալ յիւրում առանձին բարձրութիւնն» (էջ 464-465):*

*Սրա փոխարեն Սիմեոն Մետափրաստեսի բնագրում հանդիպում է բավականին ընդարձակ մի հատված, հավանաբար իր կողմից ավելացված, որում, հաստատելու համար միաստվածության գաղափարը, համառոտ շարադրում է Հին Կտակարանի Ծննդոց գիրքը՝ Աստծո արարչագործությունը, համաշխարհային ջրհեղեղը, և հետագայում, երբ «բազմացան մարդկանց մեղքերը», ինչպես Աստված, գթալով մարդկությանը, ուղարկեց իր որդուն՝ Հիսուս Քրիստոսին այն փրկելու: Եվստրատիոսը իր պաշտպանականն ավարտում է հետևյալ նախադասությամբ, որը հայերեն թարգմանության մեջ բացակայում է. «Այս ամենը համառոտ գծերով շարադրեցի, որպեսզի քո (իմա՛ Ագրիկոլայոսի – Հ. Բ.) իմաստուն Պլատոնի ասածներին հավատաս և ինձնից ճշմարտությունն ուսանես, հրաժարվես քո հայրասպան Զևսից՝ վավաշոտ կարապից, իր զավակների մահվան առթիվ աղիողորմ ողբացողից» (սյունակ 500):*

*Վերոհիշյալ հատվածի փոխարեն հայերենն ունի ընգամենը հետևյալ նախագասությունը, Եվստրատիոսի փորձի մասին «որսալու» Ագրիկոլայոսին: Նա ասում է. «Արդ, ո՛վ գատաւոր, եթէ հաւանեսցիս լսել որ ինչ յաղագս ճշմարտութեան Աստուծոյ իմոյ պատմութիւն է՝ կենսաբեր տնօրէնութեան, կարծեմ թէ իսկոյն վրէժխնդիր լինիցիս նմա, և արժամայն խորտակեսցես փութանակի զդիւաձոյլ պատկեր աստուածոց քոց, և զերծեալ ի խաւարային ժանեաց վիշապին, անկցիս յուռկան[90] կենսաբեր աւետարանին երկնից արքային» (էջ 465):*

---

90 *Ակնարկ Մատթեոսի Ավետարանի 4.18-21 (հմմտ. Մարկոս 1.16-19). «Մինչդեռ դնայր Յիսուս ընդ եզր ծովուն Գալիլեացւոց ետես երկուս եղբարս, զՍիմոնն զկոչեցեալն Պետրոս և զԱնդրէաս եղբայրն նորա, արկեալ ուռկան ի ծով, քանզի ձկնորսք էին. Եւ ասէ ցնոսա. Եկայք զկնի իմ, և արարից զձեզ որսորդս մարդկան»:*

Հավանաբար Եվստրատիոսին թույլատրվել է շարադրելու իր գաղափարները, այդ մասին է վկայում Ագրիկոլայոսի ասածը. «Ո՛վ Եւստրատիէ, զամենայն շաղփաղփանս յօդուածոց յիմարութեան անյարմար բանիցդ զոր **ուսեալ ես ի մանկութենէ,** և ոչ կարացեալ երբէք իմանալ զօգտակար շահիցդ յիմաստնոյ խրատուց, այլ զոչ պատշաճսն և զվնասակարն քեզ իմացեալ, զոր **երկրորդել իշխեցեր առաջի իմ, կամեցեալ առ փոքր մի քարշել զմեզ առ կրօնս քո.** և զայդ ոչ իմացեալ ծանեար թէ ամենայն բանք բերանոյ քո զոր խօսեցար առասպել համարեալ են առաջի աչաց իմոց» (էջ 466): Ագրիկոլայոսը ավարտում է բանավեճը ասելով. «**Արդ յայսմ հետէ ոչ ևս ներէ քեզ ատեանս մեր, և հրաման ինքնակալին խօսել ինչ յաղագս Աստծոյն քո զոր խոստացար ճառել.** զի ոչ եմք բաւական զմեծաց և զաստուածայնադոյն թագաւորաց մերոց զառաքինութիւնս բամբասել, այլ յամենայնի հպատակ լինել նոցա. վասն որոյ թողեալ քո զամենայն վիպասանութիւն պատմութեանց քոց, և ի բաց կացեալ յընդդիմաբանութեանցդ **անկեալ երկիր պագ** և զոհեա աստուածոց **ինքնակալին»** (էջ 466): Ընդգծվածները Սիմեոն Մետափրաստեսի բնագրում բացակայում են: Հայերենը այստեղ ևս **մեկ կայսեր** մասին է խոսում և ոչ **երկու**՝ ինչպես սկզբում Մետափրաստեսը:

Ավարտելով տվյալ հարցի մասին մեր խոսքը, կարող ենք վստահ արձանագրել, որ հայ իրականության մեջ նեոպլատոնական կոնցեպցիան առկա էր Եղիշեից երկու դար առաջ և այն վերաբերում էր քրիստոնեական ապոլոգետիկայի ուղղությանը: Սուրբ Եվստրատիոսի՝ Ագրիկոլայոսի կողմից հարցաքննվելու ընթացքում արտահայտած մտքերը ոչ այլ ինչ են, քան նեոպլատոնականության քրիստոնեական ապոլոգետիկային վերաբերող դատողություններ:

Հայոց գրերի գյուտը V դարի սկզբին և հայերեն լեզվով գրված երկերի հանդես գալը դեռ չի նշանակում, որ Հայաստանում (նկատի ունենք մարզպանական Հայաստանը) չէր կարող գոյություն ունենալ նեոպլատոնականության փիլիսոփայության հոսանքը, հատկապես եթե նկատի ունենանք, որ դեռևս քրիստոնեության պետական կրոն հռչակվելուց առաջ Փոքր Հայքում այն լայնորեն տարածված էր: Ինչպես տեսանք, սուրբ Սևերինոսին մահապատժի դատապարտած Լյուսիաս դուքսը, դիմելով նրան, ասում էր. «Ես առն հռետորի և փիլիսոփայի քաջաբանութիւն տեսանեմ ի քեզ»: Այդպիսի հռետոր և փիլիսոփա պիտի համարել և սուրբ Եվստրատիոսին՝ արավրակացի Տեր Հուսիկին: Փոքր Հայքը և Մեծ Հայքը իրարից չինական պարսպով բաժանված չէին, նեոպլատոնականության գաղափարները Փոքր Հայքից կարող էին Մեծ Հայք մուտք գործել V դարի կեսից շատ առաջ: Եվ ոչ միայն նեոպլատոնականության գաղափարները: Մեծ Հայքում շատ լավ տեղյակ էին Փոքր Հայքում տեղի ունեցած անցքերին: Եթե նրանք V դարում թարգմանեցին Փոքր Հայքի իրենց քրիստոնյա հայրենակիցների վարքերն ու վկայաբանությունները, ասել է՝ շատ լավ գիտեին այդ մասին:

Եվստրատիոս-Ագրիկոլայոս, քրիստոնյա-հեթանոս անձանց միջև գնացած վեճը, որ հռոմեական մանրախնդրությամբ գրի էր առնված, մի քանի տասնամյակ անց, երբ քրիստոնեությունը հռոմեական կայսրության սահ-

*մաններում պետականորեն ազատություն ստացավ, անցավ վկայաբանությունը շարադրողի ձեռքը և նրա միջոցով հասավ մեզ: Եվստրատիոսը միակը չէր, ով դավանում էր այդ գաղափարները, նա տվյալ մտքերը արտահայտում էր արդեն հասուն տարիքում և ժառանգել էր դեռ երիտասարդ հասակում իր հորից:*

*Եվստրատիոս-Ագրիկոլայոս բանավեճը հանգամանորեն և մասնագիտորեն կուսումնասիրեն և կարժեքավորեն հայ փիլիսոփայության պատմության մասնագետները: Նախազգուշացնենք միայն, որ նրանց առջև բարձրանալու է նախ և առաջ այդ բանավեճի հրատարակված բնագրի սրբագրության անհրաժեշտությունը: Թարգմանության 1874 թ. ինձ անծանոթ հրատարակիչը փիլիսոփա-մասնագետ չէր*[91]*:*

* * *

*Հայաստանում քրիստոնեության պետական կրոն հռչակման 1700-ամյակի տոնակատարությունների շրջանակներում գարձյալ հրապարակ ելավ Հ. Մանանդյանի, Պ. Անանյանի, Գ. Սարգսյանի, Լ. Խաչիկյանի, Պ. Մուրադյանի կարծիքն այն մասին, թե հայոց դարձը չէր կարող 301 թ. լինել, այլ 313-ից՝ Միլանի էդիկտի հրապարակումից հետո, այն է՝ 314-ին: Այդ կարծիքին է և Կ. Յուզբաշյանը, որը Սանկտ-Պետերբուրգի Պետական համալսարանի Արևելյան ֆակուլտետի վերջերս հրավիրած Միջազգային գիտական կոնֆերանսում, նվիրված Հայաստանում քրիստոնեության 1700-ամյակին, նպատակահարմար գտավ մեկ անգամ ևս հայտարարել, թե «Հայոց եկեղեցին դարձր թվագրում է 301-ով: Այնինչ 299 թվականից և IV դարի մի քանի տասնամյակների ընթացքում Հայաստանը գտնվում էր Հռոմեական կայսրության պրոտեկտորատի ներքո: Քիչ է հավանական, որ այն ժամանակ, երբ հենց կայսրության սահմաններում քրիստոնեությունը դաժան հալածանքների էր ենթարկվում, Հայաստանում այն հռչակվեր պետական մակարգակով: Ինչ վերաբերում է 314 թվականին, ապա այդ թվականը երևում է բավականին հիմնավորված»*[92]*:*

*Սակայն Կոստանդին Մեծին վերագրվող, այսպես կոչված, Միլանի 313 թ. էդիկտը (կամ նրա կայսերակից Լիկինիոսի՝ Նիկոմեդիայի կառավարչին հասցեագրված պաշտոնական կարգագրությունները քրիստոնեության ազատ դավանելու իրավունքի վերաբերյալ) դեռևս չէր նշանակում Հռոմեական կայսրության մեջ քրիստոնեության պաշտոնական կրոնի հռչակում*[93]*: Կոստանդին Մեծ կայսրը իր մահվան (337 թ.) նախօրեին զոհ մատուցեց հեթանոսական աստվածներին, այսինքն կայսրության պետական կրոնը հեթանոսությունն էր: Նման պարագայում կայսրությունը թույլ կտա՞ր*

91 *Նշեմ մի օրինակ միայն. «...իսկ Հերմէս՝ մեծ շարժող զնա և տածող և անեղ կամեցաւ ասել» (էջ 465): Ուղղելի՝ «Հերմէս եռամեծ»: Նույն սխալը հանդիպում է Գրիգոր Մագիստրոսի թղթերի հրատարակության մեջ. «Եւ Հերմեռաս մեծ շարժօղ զնա և տածօղ և իմանալի աշխարհ» (էջ 182): Ուղղելի՝ «Հերմէս եռամեծ» (հուն.* Ἑρμῆς τρισμέγιστος*):*

92 К. Н. Ю з б а ш я н. Основные этапы становления Армянской церкви. Санкт-Петербургский Государственный университет, Восточный факультет. Международная научная конференция "Армения и Христианский Восток", 27 – 30 июня 2001. Тезисы докладов, с. 52.

93 *Ա. Մ ա ր տ ի ր ո ս յ ա ն. Նշվ. աշխ., էջ 20:*

Տրդատ III-ին և Գրիգոր Լուսավորչին որ «իր պրոտեկտորատում» հեթանոսական տաճարները քանդեն, հեթանոսական աստվածների արձանները տապալեն, քրմերին հալածեն:Այնպես որ գիտական նորություն անելու կեցվածքը դեռ գիտություն չէ, իսկ 301 թ. 13 տարով երկարաձգելու տեղաշարժը սնանկ է:

### Վկայաբանության մեջ հանդիպող հունա-հռոմեական տերմինների մասին

Ինչպես շարադրանքում նշեցինք, հունա-հռոմեական տերմինների հարցում ստիպված ենք դիմելու Սիմեոն Մետափրաստեսի հունարեն բնագրին, քանի որ հայ թարգմանիչը չիմանալով դրանց իրական նշանակությունը կամ հետևելով սրբոց թարգմանչաց որդեգրած սկզբունքին, ջանում է թարգմանել կամ իմաստավորել ոչ միշտ ճիշտ:

Վկայաբանության գլխավոր գործող անձը սուրբ Եվստրատիոսն է, որ մինչև իր նահատակության տարին վարել էր երեք պաշտոն: Նախ, «երբ դեռ պատանի էր», եղել էր ecseptor (սյունակ 473): Տերմինը լատիներեն է, հունարեն բնագրում բերված է հունարեն գրությամբ ἐκσέπτωρ: Հայաստանի դքսի, ինչպես մնացածների, իրավասության ներքո առկա էր ծառայողների մի խումբ, որը կազմում էր նրա officium-ը, այն է՝ քարտուղարությունը: Officium-ը գլխավորում էր princeps-ը՝ քարտուղարության վարիչը: Քարտուղարությունը բաժանված էր բաժինների, որոնք scrinia էին կոչվում և վարում էին տարբեր բնագավառների գործունեությունը: Ecseptor-ներն ահա, գործադիր օրգաններ էին: Վկայաբանության հայերեն թարգմանության մեջ բառը չի թարգմանված և բերվում է հունարենի սեռական հոլովում «ղեքսկեպտորոս» (էջ 442): Մ. Ավդերյանը տալիս է բացատրություն. «Այն է ըստ հռովմայեցւոց էքսչեփդօր, որ է դպիր կամ նոտար ատենի գրիչ բանից թելադրելոց նմա ի զօրագլխէն կամ յատենակալէն» (Լիակատար վարք, հ. Թ, էջ 491):

Եվստրատիոսն ապա «դքսական դասի սկրինիարիոսն էր» (σκρινιάριος τῆς δουκικῆς τάξεως): Τάξις-ը հայերեն թարգմանված է ճիշտ՝ բայց տառացի «դաս»: Մի այլ տեղում τάξις-ը (սյունակ 473) թարգմանված է «գունդս զինուորացն» (1813, էջ 491, 1874, նույնը): Բառը նշանակում է «զորամաս», որով դքսին ենթարկվող զորամասի սկրինիարիոս, քարտուղարության ծառայող: Վկայաբանության 1813 և 1874 թթ. հրատարակություններում սկրինիարիոսը թարգմանված է «իշխան»:

Վերջապես, իր նահատակության տարին Եվստրատիոսը, ըստ Մետափրաստեսի բնագրի, κομενταρήσιος էր (լատ. commentariensis բառացի՝ քարտուղար), քրեական գործերի (հասկանալի է՝ զինվորական բնագավառի) բաժնի վարիչը (տե՛ս Ն. Ա դ ո ն ց. նշվ. աշխ. էջ 120): Հայաստանի դքսի տրամադրության տակ էին գտնվում, ըստ 404 թ. կազմված (Notitia dignitatum et administrationum omnium tam civilium quam militarium in partibus Orientis et Occidentis) նաև commentariensis-ներ (Ն. Ա դ ո ն ց. նշվ. աշխ., էջ 114):Հայերեն թարգմանության մեջ բառը չի թարգմանված,

սոսկ ասված է՝ «զորական», բայց «անյաղթ թագաւորին Քրիստոսի» (էջ 440, Վարք և վկայաբանութիւնք. հ. Թ, էջ 488):

Սբ. Եվգենիոսը համարվում է սբ. Եվստրատիոսի գլխավորած τάξις-ի (դասի) όφφικιάλιος (լատ. officialis - ծառայող):

Դուքս Լյուսիասը նշանակված էր գլխավորելու բոլոր լիմիտանեոսներին (πάντων τῶν λιμιτανέων ἐπιτροπεύειν, սյունակ 469), և պատահական չէ, որ նա հաստատվեց Սատաղ քաղաքում, որն իրոք սահմանային քաղաք էր Փոքր և Մեծ Հայքի սահմանագլխին: Լիմիտանեոս նշանակում է սահմանապահ, սահմանապահ զորք: Մ. Ավգերյանը բուն տեքստում մանրամասն մեկնաբանում է. «Լիւսիաս էր կարգեալ ի գքսութիւն համօրէն սահմանացն այնոսիկ իբրև մարզպան կուսակալ և զօրավար՝ որ ի հռովմայեցւոց կոչէր դուքս լիմիտանէուս, որպէս թէ սահմանապետ» (էջ 483): Բյուզանդական շրջանում (VII դարի վերջից) նրանց փոխարինելու եկան ակրիտասները (հունարեն՝ ἄκρα - ակրա - «սահման» հունարեն բառով անվանված): Որպես կանոն հաստատված էին արաբա-բյուզանդական սահմանի վրա և իրենց ծառայության դիմաց հողեր էին ստանում ի սեփականություն: Նիկեփոր II կայսեր (963-969 թթ.) վերագրված մի երկում մանրամասն խոսվում է նրանց մասին, և համարվում են հայազգի (տե՛ս Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին 6, Բյուզանդական աղբյուրներ, գիրք Բ, Կոստանդին Ծիրանածին, էջ201-202): Այդպիսիք պիտի լինեին և Փոքր Հայքի Սատաղ քաղաքում տեղակայված Լյուսիաս դքսի լիմիտանեոսները՝ հայազգի:

Նշենք այստեղ, որ վկայաբանության մեջ ասված է նաև, որ Լյուսիասին և Ագրիկոլայոսին հանձնարարված էր "ὑπηρετεῖσθαί τε αὐτοῖς οὐ μόνον τὴν τῶν λιμιτανέων χεῖρα θεσπίσας, Ἀλλὰ καὶ ἅπαν τὸ στρατιωτικὸν, τὸ ἐν ταῖς πλησιαζούσαι πόλεσι καθιδρυμένον" (սյունակ 469), այսինքն՝ «ղեկավարեն ոչ միայն սահմանապահների (լիմիտանեոսների) զորքը, այլև մերձակա քաղաքներում տեղակայված ամբողջ զորքերն ընդհանրապես»:Վկայաբանության 1874 թ. հրատարակությունում (էջ 436) հիշյալ նախադասության դիմաց ունենք հետևյալը. «և զզինուորութիւն ամենայն գնդիցն որ ի միջերկրեայսն և ի մերձակայ դաւառսն բնակեալ էին»: Ըստ հայերեն թարգմանության այդ պաշտոնը տրվել էր միայն Լյուսիասին, իսկ ըստ Մետափրաստեսի՝ երկուսին էլ, նաև Ագրիկոլայոսին: Մ. Ավգերյանի հրատարակության մեջ նույնպես այդ երկուսն են նշանակված. «սլատուէր ունելով՝ զի ձեռնտու լինիցի սոցա և զինուորութիւն ամենայն արքունի գնդիցն, որ ի միջերկրեայսն և ի մերձակայ գաւառսն բնակեալ էին, և կոչէին ձեռն լիմիտացի, այսինքն՝ սահմանագունդ» (էջ 483): Ընդգծվածը Մ. Ավգերյանի ավելացրածն է: «Արքունի» բառը 1874 թ. հրատարակությունում բացակայում է: Մի այլ տեղում, ուր ասված է Ագրիկոլայոսի մասին, թե կայսրը Ագրիկոլայոսին նշանակեց գլխավորելու ամբողջ նահանգի իշխանությունը (սյունակ 469), 1874 թ. հրատարակությունում թարգմանությունն է. «Ագրիկողայոս, որոյ ամենայն աշխարհաց զգատաւորական իշխանութիւն ընձեռնեալ էր» (էջ 436), իսկ 1813 թ. հրատարակությունում «Ագրիկողայոս, որում տուեալ էր դատաւորական իշխանութիւն այն աշխարհաց» (էջ 483):

*«Դուքս» (*δούξ*) բառը որպես կանոն չի թարգմանվում, բայց առանձին դեպքերում հանդիպում է «րդեշխ»:*

Πραιτώριον*-ը (սյունակ 472) և 1813, և 1874 թթ. հրատարակություննե- րում թարգմանված է «ապարանք իշխանին»: Բառը լատիներեն է* praetorium, *որ բազմաթիվ նշանակություններ ունի. զորահրամանատարի վրանը, նրա շտաբը, զորավարին կից զինվորական խորհուրդը, փոխարքայի նստավայրը, կայսերական դվարդիան, պալատ: Մեր դեպքում նահանգապետի ապարանքն է, նստավայրը, և այն հանգամանքը, որ Եվստրատիոսը ծառայում էր դքսի ապարանքում, ընդգծում է նրա բարձր դիրքը: Սուրբ Եվգենիոսը ծառայում էր նույն ապարանքում՝ Եվստրատիոսի հրամանների ներքո:*

Δημοσια φυλακη, *որ պետական բանտ է նշանակում, հայերեն թարգմանված է «հանդիսական բանտ» (1813, էջ 488, 1874, էջ 440):*

## ХРИСТИАНСТВО В МАЛОЙ АРМЕНИИ. НАЦИОНАЛЬНО-РЕЛИГИОЗНОЕ И СОЦИАЛЬНО-ПОЛИТИЧЕСКОЕ ПОЛОЖЕНИЕ В ПРОВИНЦИИ ВО ВТОРОЙ ПОЛОВИНЕ III ВЕКА

(По мартирологиям святых IV века)

*РАЧ БАРТИКЯН*

Р е з ю м е

Начиная с V века, со времени создания армянской письменности и по сей день, о христианстве в Армении написано очень много, однако все источники и исследования касаются христианства в Великой Армении. Мартирологий святых Евстратийцев (Евстратия, Евгения, Авксентия, Ореста и Мардария) свидетельствует, что новая религия охватывала все социальные слои Малой Армении. Мартирологий был написан скорее всего в первой половине IV в., в V в. переведен на армянский. Греческий оригинал дошел до нас в редакции Симеона Метафраста (X в.), а первоначальный текст сохранился в древнеармянском переводе. Географический ареал событий — Малая Армения — города Араврака, Сатала, Никополь, Севастия. Согласно данным мартирология, Малая Армения и Каппадокия до начала гонений христиан императором Диоклетианом, были целиком христианскими. Этими провинциями руководили представители местных этносов — армян и каппадокийцев, которые приняли христианство в стремлении сохранить свою национальную самобытность, не поглотиться водоворотом римской цивилизации. Борьба империи против "национальной автономии" названных областей шла под прикрытием гонений христиан. Местные руководители были отстранены и вместо них назначены лица "из страны греков" — Лисий и Агрикола. Касаясь этнической принадлежности святых, можно отметить, что у главного мученика два имени — греческое Евстратий и армянское Хусик. Мардарий говорил со своей женой по-армянски. Стало быть мученики были армянами по национальности. В мартирологии подробно говорится о догматическом споре между Агриколаем, человеком весьма сведущим в "родной", т.е. языческой науке и Евстратием. Последний защищает новую религию

с позиций неоплатонизма. Это философское течение проникло в Великую Армению именно из Малой Армении. В дискуссии с Агриколаем Евстратий говорит, что исповедует христианство с младенческих лет, что он вырос в христианской семье, а пресвитер Авксентий, отвечая Лисию, говорит, что он с детства христианин. Стало быть — с середины III в.

## CHRISTIANITY IN ARMENIA MINOR. THE NATIONAL-RELIGIOUS AND SOCIAL-POLITICAL SITUATION IN THE PROVINCE IN THE SECOND HALF OF THE 3rd CENTURY

(Based on the Martyrologies of Saints of the 4th century)

*HRACH BARTIKYAN*

Summary

Since the 5th century, starting with the creation of the Armenian alphabet and up today, it is written a lot about the Christianity in Armenia, but all the sources and investigations concern the Christianity in the Great Armenia. However, the Martyrology of the Saint Eustratians (Eustratios, Eugenios, Auxentios, Orestes and Mardarios) proves that the new religion covered all the social groups of Armenia Minor. Most likely, the Martyrology was written in the first half of the 4th century and was translated into Armenian in the 5th century. The Greek original has reached us in the edition of Simeon Metaphrastes (10th c.) and the initial text is kept in the old-Armenian translation. The place of the events is Armenia Minor, the Arauraka. Satala, Nikopolis, Sebasteia cities. In accordance with the Martyrology, before the persecutions of Christians by the emperor Diokletian, Armenia Minor and Cappadocia were entirely Christian. These provinces were administrated by the representatives of the local ethnoses - Armenians and Cappadocians, who had accepted Christianity with the purpose of saving their national originality, aiming not to be swallowed by the vortex of the Rome civilization.The struggle of the empire against the "national autonomies" was carried out under the cover of the persecutions of Christians. The local leaders were removed and the persons "from the Greeks' country", Lysias and Agricolaus, were assigned instead of them. Coming to the nationality of the Saints, we can say that the senior martyr has two names, Greek - Eustratios and Armenian - Housik. Mardarios spoke with his wife in Armenian. So, the martyrs were Armenians by nationality. The dogmatic dispute between Agricolaus, who was deeply experienced in "own", i.e. pagan science, and Eustratios, is described in the Martyrology in details. The latter defends the new religion from the position of neoplatonism. This philosophical movement permeated into Great Armenia exactly from Armenia Minor. During the dispute with Agricolaus Eustratios says that he confesses Christianity since childhood, that he grew up in a Christian family, and the presbyter Auxentios answering Lysias says that he is Christian since childhood, therefore since the middle of the 3rd century.